

# Կ Ա Մ Ք

ՎՍԵՎՈԼՈԴ ՎԻՇՆԵՎՍԿԻ

Այս դեպքը կատարվել է Տրիեստում: Իտալական «Անկոնա» շոգենավի մաքսային ստուգման ժամանակ ժանդարմները նավի անձնակազմի ընդհանուր սենյակի պատից պոկեցին Լենինի դիմանկարը և պատռեցին: Հուզված, վրդովված նավաստիները դադարեցրին աշխատանքը:

—Քանի դեռ իր տեղում չի կախվել Լենինի նկարը, նավը չի շարժվի,— հայտարարեցին նրանք:

Նավապետը սկզբում հորդորում էր, թե Լենինը «այսպիսին է ու այնպիսին», թե դիմանկարը գրոշ չարժե, հետո սկսեց սպառնալ, տեսնելով, որ սպառնալիքն էլ չօգնեց, սկսեց համոզել, որ հետո ինքը ուրիշ նկար կգտնի: Նավաստիները շարունակում էին իրենցը պնդել՝ «Միայն Լենինի նկարը, ուրիշ ոչինչ»:

«Far niente (Ոչինչ չանել), քանի դեռ նկարը իր տեղում չէ»: Նավապետը գլուխը կորցրեց: Եթե նավը չմեկներ, հսկայական վնաս էր կրելու: Ի՞նչ անել: Եվ որոշեց վիճել՝ ինչ գնով էլ լինի, Լենինի դիմանկար գտնել: Նա հեծիծ եղավ քաղաքի բոլոր գրախանութներում, պահեստներում, լուսանկարչատներում, թանգարաններում, մինչև որ մեկը խորհուրդ տվեց գնալ նավաստիների արհմիության կոմիտե: Այնտեղ նրան խրատելով, տվեցին Լենինի նկարը: Նկարը անձնակազմի սենյակում փակցվեց բոլոր նավաստիների ներկայությամբ՝ հանդիսավոր պայմաններում: Հինգ րոպե չանցած, սկսեցին աշխատել մեքենաները և «Անկոնան» խարիսխը բարձրացրեց:

Հավիվ թե իտալացի նավաստիները կարողանային դրանից լավ արտահայտել իրենց սերը համաշխարհային հեղափոխության սիրելի առաջնորդի նկատմամբ:

Նկ. ԷԼԵՆԱ ՄԻՐԶԱ-ԱՎԱԳՅԱՆԻ



## ԵՐԳ ԳԱԳԱՐԻՆՅԱՆ ԹՌԻՉՔԻ ԵՎ ՄԱՐԴՈՒ ՄԱՍԻՆ

*ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Հետախույզ է մարդը
Աշխարհի գալու օրից.
Որոնում է, գտնում
Ու որոնում նորից...
Դժվարինն է սիրում
Եվ ուղիներն անհարթ,
Եվ չի կարող մարդը
Թողնել երկինքն անհայտ:
Նա աստղերի շարժման
Ուղեծիրը գիտի,
Սակայն մարդը համառ
Այնտեղ պիտի լինի:
Պիտի այնտեղ տանի
Երկրի բույրերն անմար,
Նոր հորիզոն պիտի
Բացվի մարդու համար...
Երբ ասում են՝ մարդը
Աստղաճամփան հարթեց,
Տիեզերքի տերն է,
Առասպել չէ արդեն:

Նկ. ՋԱՆԻԿ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

*Ապրիլի 12-ը տիեզերագնացության օրն է*

# ԵՐԿՐԻ ԱՍՏՂԱՅԻՆ ՈՐԴԻՆ

*ԼԻԴԻԱ ՕԲՈՒԽՈՎԱ*

## ՃԱԿԱՏԱԳՐԻ ԸՆՏՐՅԱԼԸ

Գեներալ Կամանինը շատ բան է տեսել: «Մազերը ալեխառն են, իսկ կուրծքը՝ շքանշաններով զարդարված»,— այսպես կարելի է ասել նրա մասին: Քսանչորս տարեկանում նա բևեռում փրկել է չելյուսկինցիներին: Թերթերի էջերից ընթերցողներին է նայել մի պատանի, որը ձգտում էր դեմքին տալ գործարար, նույնիսկ մի քիչ խոժոռ արտահայտություն: Գագարինի հետ նա հանդիպեց 1960 թվի մարտի սկզբին: 1961 թվի ապրիլի 5-ին, երբ նրանք ձյունածածկ Մոսկվայից ինքնաթիռով եկան Բայկոնուր, ուր ավազե բարխանների վրա սուրում էր «աֆղան» կոչված քամին, Նիկոլայ Պետրովիչ Կամանինը գրեց օրագրում. «Ավտոմեքենայով օդանավակայան գնալիս, ինքնաթիռում և այժմ, երբ գրում եմ այս տողերը,



իսկ տիեզերագնացները դուրսը վոլեյբոլ են խաղում, ինձ անընդհատ հետապնդում է միևնույն միտքը. առաջինը ո՞ւմ թռիչքի ուղարկել՝ Գագարինի՞ն, թե՞ Տիտովին: Ե՛վ մեկը, և՛ մյուսը հիանալի թեկնածուներ են... Դեռ մի քանի օր կա ընտրության համար»:

Անցնում են օրերը: Նիկոլայ Պետրովիչը նորից է դիմում նվիրական տետրին: Ահա ևս մի գրառում. «Ամբողջ օրը հետևում էի Գագարինին: Միասին ճաշեցինք, ընթրեցինք և ավտոբուսով վերադարձանք. Նա իրեն հիանալի էր պահում. խոսակցության, վարվեցողության, շարժումների մեջ ես չնկատեցի մի բան, որ չհամապատասխաներ իրավիճակին: Հանգստությո՛ւն, վստահությո՛ւն և իմացությո՛ւն. այս է նրա բնութագիրը»:

Ապրիլի 8-ին տեղի ունեցավ Պետական հանձնաժողովի նիստը: «Վոստոկ» տիեզերանավի օդաչուի թռիչքային առաջադրանքը ստորագրում են ակադեմիկոս Կորոլյովը և գեներալ Կամանինը: Հաջորդ օրվա մասին Կամանինը գրում է. «Օրվա վերջում ես որոշեցի չտանջել տիեզերագնացներին և հայտնել վճիռը: Այս հարցում, ի միջի այլոց ասած, քիչ տարաձայնություններ չկային: Մի մասը գտնում էր, որ վճիռը պետք է հայտնել մեկնարկի վայրում, իսկ մյուս մասը կողմնակից էր ավելի շուտ հայտնելուն, որպեսզի տիեզերագնացը ընտելանա թռչելու մտքին: Ես հրավիրեցի Յուրի Գագարինին ու Գերման Տիտովին ու, ինչքան հնարավոր էր, հանգիստ ասացի.

— Հանձնաժողովը վճռեց. թռչում է Գագարինը: Պահեստային կլինի Տիտովը:

Չեմ թաքցնում, Գագարինը ժպտաց իրեն հատուկ ժպիտով: Տիտովի դեմքով վհատության ստվեր անցավ, բայց դա միայն մի կարճ ակնթարթ տևեց: Գերմանը ամուր սեղմեց Յուրիի ձեռքը, իսկ նա չզլացավ ընկերոջը մխիթարել. «Շուտով, Գերմա՛ն, կլինի քո մեկնարկը»:

Թռիչքի նախօրյակին, ճաշից հետո, Յուրին հանկարծակի ասաց Կամանինին.

— Գիտե՞ք, Նիկոլա՛յ Պետրովիչ, ես հավանաբար այնքան էլ նորմալ մարդ չեմ:

— Ինչո՞ւ:

— Վաղը թռիչքն է, և այն էլ ի՜նչ թռիչք: Իսկ ես բոլորովին չեմ հուզվում, մազաչափ չեմ հուզվում: Մի՞թե այսպես կարելի է»:

Ահա և Կորոլյովի տպավորությունը. «Կյանքիս մեջ շատ հետաքրքիր մարդկանց եմ հանդիպել: Գագարինը առանձնահատուկ, նշանավոր, անկրկնելի անձնավորություն էր: Մեկնարկի նախապատրաստման օրերին, երբ բոլորը բավականին հոգս, անհանգստություն ունեին և հուզված էին, միայն նա թվում էր, թե մնացել էր հանգիստ, նույնիսկ ուրախ. փայլում էր արևի պես: «Ինչո՞ւ ես միշտ ժպտում»,— հարցրին նրան: «Չգիտեմ: Երևի լուրջ մարդ չեմ»: Ես մտածեցի, որ լավ կլիներ, եթե մեր երկրում շատ լինեին այդպիսի «անլուրջ» մարդիկ... Մի դեպք առանձնապես ինձ զարմացրեց: Առավոտյան, թռիչքից առաջ, երբ Յուրին հագնում էր տիեզերական զրահները,

մտա «հանդերձարան» և հարցրի. «Ինչպե՞ս է տրամադրությունդ»: «Գերազանց,— ասաց նա և, ինչպես միշտ, շողշող ժպիտով ավելացրեց.— Իսկ Ձե՞րը»: Նա ուշադիր նայեց իմ գունատ, հոգնած դեմքին, չէի քնել մեկնարկի նախորդ գիշերը, և ժպիտը իսկույն մարեց դեմքին. «Սերգե՛յ Պավլովիչ, մի՛ անհանգստացեք, ամեն ինչ լավ կլինի,— ասաց նա մեղմությամբ»:

## ՀԱՆԴԻՊՈՒՄ

Յուրին երբ թեթև օրորվելով՝ ոտք դրեց խոնավ ու կոշտ հողին, առավոտյան ժամը 11-ն էր: Քամի էր փչում: Նա կանգնել էր ոչ բարձր բլրակների ու հեղեղատների մեջ, ավազե զառիթափի ստորոտում, անտառաշերտի սառած թփերի մոտ: Նրա գլխի վերև ծվեն-ծվեն ամպերով փիրխարի երկինքն էր: «Մի հոգու երկինք», ինչպես ասում են օդաչուները: Նեղ խցիկի փոխարեն՝ լայնարձակ հեռաստան: Մի շերտ կարմիր բոցի փոխարեն՝ անհուն կապույտ և անշարժություն: Երկիրը կազմված է լռությունից և լույսից: Ոչ մի ավելորդ ձայն չկար: Միայն քամին էր թավալվում բլուրից-բլուր, մեկ էլ արյունն էր աղմկում ականջներում:

Առաջին կես ժամը նա տարօրինակ տեսք ուներ. անժպիտ, բայց շողացող: Կարծես արևի ամեն մի ճառագայթը նորից է նվեր ստանում: Կարծես լիովին համոզված չէ, որ կանգնած է ամուր, ցրտահերկ արված հողի վրա: Նրա մազերը խոնվել էին ճակատին, արտակարգ հոգնությունից հոնքերը իջել էին կոպերին: Բիբերից դեռ չէր անհետացել տիեզերքի սևությունը:

Չալ հորթուկին ազատ թողնելով արոտում, անտառապահի կինը՝ Աննա Ակիմովնա Տախտարովան և թոռնիկը՝ վեցամյա Ռիտան, գնացին բանջարանոց: Հանկարծ Ռիտան քաշեց տատիկի թևքից և ցույց տվեց դաշտը: Աննա Ակիմովնան ուղղեց կքած մեջքը և անսպասելիությունից քարացավ: Մոտ հարյուր քայլ հեռավորության վրա, օրորվելով շարժվում էր մի զարմանալի էակ: Ձեռքերը, ոտքերը և մարմինը փաթաթված էր արևածաղկի գույնի հաստ շորով, ուսերին ջրասուզակի նման գունդ ուներ: Օտարականը թափահարեց ձեռքը: Տախտարովան թոռնիկի ձեռքը բաց չթողնելով՝ զգուշորեն մոտ գնաց: Քիչ անց Յուրայի դեմ կանգնել էին երկու վախեցած հայրենակիցներ:

— Յուրայի՞ն եմ, սովետակա՞ն,— բացականչեց Գագարինը և որպեսզի վերջնականապես հանգստացնի, ասաց.— Ես տիեզերագնաց-օդաչու եմ: Վերադարձել եմ տիեզերքից:

Աննա Ակիմովնան այդ օրը ռադիոյով չէր լսել թռիչքի մասին, բայց նրա որդին ծառայում էր բանակում: Նա մի քիչ հանգստացավ ու ժպտաց: Գագարինը այդ տեսարանը այսպես էր հիշում. «Մի՞թե իրոք տիեզերքից ես,— դեռ ոչ վստահ հարցրեց նա:
— Պատկերացրեք՝ այո՛,— ասացի ես»:

...Թռիչքի բարեհաջող ավարտի մասին Կամանինը լսեց ճանապարհին: Նրանք հանդիպեցին Կույբիշևի օդանավակայանում: Ապրիլի 14-ին, ամպոտ, ցուրտ առավոտյան, Գագարինի համար Մոսկվայից եկավ հատուկ ինքնաթիռ: Վերադարձին, մայրաքաղաքից 50 կմ հեռու, ինքնաթիռին մոտեցավ կործանիչների պատվավոր ուղեկցուրդը. երկուսը՝ աջից, երկուսը՝ ձախից, երեքը՝ ետևից: «ՄԻԳ»-երը կողքից այնքան մոտ էին թռչում, որ Յուրին տեսավ օդաչուների ժպտացող դեմքերը և ինքն էլ ժպտաց: Այնուհետև նա վերևից տեսավ Մոսկվայի փողոցներում, Վնուկովոյի օդանավակայանում հավաքված մարդկանց խմբերը և հուզվեց: Ինքնաթիռը անցնելով թռիչքուղիով՝ կանգնեց տրիբունայից 100 մետր հեռու: Գորշ դաշտի միջով ձգվել էր գորգի նեղ ու երկար շերտը: Այն սկսվում էր աստիճաններից, որով իջնում էր տիեզերագնացը:

Փուչիկները վեր բարձրացան, նվագախումբը քայլերգ նվագեց: Գագարինը քայլում էր առույգ, մեծ-մեծ քայլերով, չնայած կոշիկներից մեկի կապն արձակվել էր... «Այո՛, ես վախենում էի ելույթ ունենալ հազարավոր մարդկանց առաջ, տեսնել նրանց զարմացած, հիացած դեմքերը: Ես պատրաստ էի տիեզերքի փորձությանը, բայց անպատրաստ՝ մարդկային աչքերի ծովի փորձությանը»:

Այնուհետև Յուրի Գագարինի կյանքը կարծես ընթանում էր երկու պլանով: Նա մնում էր իբրև մի սպա, որ պատրաստ էր հրամանի համաձայն գործել օրվա ցանկացած պահին: Եվ առաջվա պես հստակ ու կարգապահ վարում էր իր պարտականությունները Տիեզերագնացների քաղաքում, շատ էր սովորում և սովորեցնում էր ուրիշներին: Բարեկամական այցով մեկնում էր բազմաթիվ երկրներ. դա նույնպես նրա աշխատանքն էր: Վերջին տարիներին Գագարինը ջանասիրաբար սովորեց և ավարտեց ռազմական ակադեմիան: Նա մեծացավ, փոխվեց արտաքնապես, կազմավորվեց կենցաղը... Ողջ մարդկության համար, սակայն, նա մնում է որպես տիեզերական առաջնեկը, նա, ով աշխարհը հմայեց պատանեկան սրտաբաց ժպիտով:

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ





Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

# ԳԱՐՆԱՆԱՅԻՆ ԱՌԱՎՈՏ

*ԵՐՋԱՆԻԿ ԱՌԱՔԵԼՅԱՆ*

Անձրև տեղաց
Լուսաբացին,
Ու լուռ դողաց
Մերկ ակացին:
Ծիտը եկավ
Կանգնեց քարին,
Ծլվլոցով
Ասաց ծառին.
—Էլ մի՛ տխրիր,
Սիրո՛ւն իմ ծառ,
Կրկին եկան
Օրեր պայծառ:
Հալվեց ձյունը
Ու ջուր դարձավ,
Ցուրտն ու բուքը
Արդեն անցան:

Շուտո՛վ, շուտո՛վ
Լեռ ու կածան,
Շող կկապեն
Ու ծիածան:
Դու կհագնես
Շորեր ճերմակ,
Դաշտ ու հովիտ՝
Կանաչ վերմակ:
Մանուկները
Կգան երգով,
Կթռվռան
Շուքիդ ներքո:
Առավոտ է
Գարնան պայծառ,
Էլ մի՛ դողա,
Սիրո՛ւն իմ ծառ:

# Մ Ե Ղ Ր Ա Հ Ա Ց

*ՌՈՒԲԵՆ ՄԱՐՈՒԽՅԱՆ*

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

Մի աշնան իրիկուն իմ Արամ պապն ինձ ասաց.

— Մովսե՛ս, որ դու ինձ լսես, մեղվաբույծ կըդառնաս:

— Ես օդաչու եմ ուզում դառնալ, պա՛պ,— ասացի ես:

— Օդաչու... հա՛,— հոգոց հանեց պապս ու նայեց երկնքին,— լավ է, շատ լավ է, բայց դե...

— Ես, որ օդաչու դառնամ, քեզ ուր ուզես՝ կըտանեմ, պա՛պ,— ոգևորված ասացի ես:

— Ես գնացքով կգնամ. օդանավ չեմ սիրում:

— Վա՜յ, պա՛պ ջան, բա մարդ օդանավ չսիրի՞,— ու ես սկսեցի նրան պատմել օդանավերի մասին, պատմեցի, թե ինչպես են նրանք թռչում գիշերները, թե օդաչուները ինչքան մոտիկ են աստղերին: Էլի ուրիշ շատ ու շատ բաներ պատմեցի, որոնք կապված են երկնքի ու թռիչքների հետ: Այս բոլորը պապս լսեց, լսեց ու վերջում ասաց.

— Մովսե՛ս ջան, մեղուները նույնպես թռչում են...

— Թող թռչեն, մեղուն ի՞նչ է որ... իսկ օդանավը...

— Հրաշք է, հա՛,— ավելացրեց պապս:

Այդ ժամանակ ընկերներս ինձ դուրս կանչեցին: Ես վազեցի փողոց, որպեսզի նորից տղաների հետ խոսենք օդաչուների ու օդանավերի մասին:

Մի քանի օր հետո պապս գնաց գյուղ:

Հետո այդ ողջ ձմռանն ու գարնանը ինձ հետ ոչ մի արտակարգ դեպք չպատահեց, բացի այն, որ ես մի քանի անգամ հիվանդացա հարբուխով, մեկ անգամ էլ անգինայով, մի երկու անգամ էլ... անունը չեմ հիշում: Այդ հիվանդությունների ժամանակ ես միշտ մտածում էի օդանավերի ու օդաչուների մասին: Իմ նկարչական տետրակում նկարեցի այն օդանավը, որով պետք է թռչեմ հեռավոր ճամփորդությունների:

Եվ այսպես մայիսը վերջացավ, փոխադրվեցի չորրորդ դասարան:

Գյուղից եկավ պապս: Ես նրան շատ էի կարոտել: Գրկեցի: Պապից սարի, քարի, ծառի, հողի հոտ էր

գալիս: Նա նայե՜ց, նայե՜ց ինձ, ձեռքերն իրար խըփեց ու ասաց.

— Լավ չեն գործերդ, օդաչո՜ւ: Էդ ի՞նչ ես դարձել, երեսիդ գույն չի մնացել: Այսպես որ մեծանաս, ավանակ անգամ չես կարող քշել, ուր մնաց օդանավ:

Ես տխրեցի:

— Հավաքե՜ք, սրա իրերը հավաքե՜ք, ինչ ունի-չունի՝ հավաքե՜ք: Ինձ հետ տանում եմ,— ասաց պապս:

— Ո՞ւր ես տանում,— հարցրեց մայրս:

— Ձեր գործը չէ: Ինձ հետ գալի՞ս ես, Մովսե՜ս ջան,— ինձ նայեց պապը:

— Գալիս եմ,— ուրախությունս թաքցնելով՝ ասացի ես:

— Վաղը կգնաք,— ասաց հայրս:

— Ո՜չ: Հենց հիմա գնում ենք: Ես ժամանակ չունեմ... շո՜ւտ արեք, գնում ենք,— գայրացավ պապս:

Տնեցիները սկսեցին արագ-արագ կապկպել իմ իրերը: Իհարկե, տաք շորեր դրեցին, որ հանկարծ չմրսեմ ու նորից չհիվանդանամ: Բացի տաք շորերից, նրանք առանձին-առանձին խրատեցին ինձ:

— Սառը ջուր չխմես,— ասաց մայրս:

— Շատ չվազես,— ասաց հայրս:

Էլի հազար ու մի տեսակ խրատ տվին ու ինձ ճանապարհեցին:

— Մենք գյուղ չենք գնում,— ճանապարհին ասաց պապը:

— Բա ո՞ւր:

— Մեղվանոց:

Նստեցինք ավտոմեքենա ու գնացինք: Ոլորան ճանապարհներով բարձրացանք վեր, անցանք անդունդների եզրերով ու գնացի՜նք, գնացի՜նք, վերջապես մի տեղ պապս կանգնեցրեց մեքենան ու մենք իջանք:

— Հասա՞նք, պա՜պ,— հարցրեցի ես:

— Չէ՜: Ա՞յ էն կապույտ սարը տեսնո՞ւմ ես:

— Տեսնում եմ:

— Էդ սարի փեշին իմ մեղվանոցն է: Գնացի՜նք,— առաջ ընկավ պապը:

Ճանապարհի եզրերը զուգված էին ծաղկով ու կանաչով: Ծովի պես ծփում էր կորնգանի կարմրավուն արտը, ու մեղուների պարսը բզզում էր նրա մեջ:

— Մեղուները երգում են,— ասաց պապս՝ ականջը դաշտին պահելով:

— Ինչպե՞ս թե երգում են,— հարցրեցի ես:

— Երբ դաշտերը զուգվում են ծաղիկներով, մեղուներն ուրախությունից երգում են: Ես սիրում եմ նրանց երգը. դա համբերաշխ ընտանիքի երգն է, աշխատանքի երգը,— պապը կռացավ մի ծաղկի վրա ու ինձ կանչեց իր մոտ:— Ահա, տե՜ս, թե ինչպես է մեղուն աշխատում:

Ես մոտեցա պապին: Մեղուն զգուշությամբ մըտավ ծաղկի բաժակը, երկար կնճիթը, որ նա թաքցընում է բերանի խոռոչում, սուզեց բաժակի հատակում գտնվող նեկտարի մեջ: Կնճիթը լցվեց նեկտարով: Հետո նա ծաղկի առէջքի վրայից սկսեց հավաքել ու իր ոտքերի կողովների մեջ լցնել ոսկեդեղին ծաղկափոշին: Երբ արդեն լրիվ բեռնավորված էր, բարձրացավ բաժակի պռնկին, ուղղություն վերցրեց դեպի մեղվանոցն ու թռավ:

Պապս ժպտաց:

— Տեսա՞ր ոնց թռավ:

— Տեսա,— պատասխանեցի ես, թռչող մեղվի ետևից նայելով:

— Իսկ էդ ծաղկափոշին ինչի՞ համար է տանում, պա՜պ,— հարցրեցի ես:

— Ծաղկափոշին մեղուն խառնում է նեկտարի հետ ու կերակրում է նոր դուրս եկած մեղուներին, որ նրանք առողջ ու աշխատունակ լինեն,— բացատրեց պապս:

— Զարմանալի է, այ քեզ խե՜լք,— ասացի ես:

— Ա՜յ, սա ուրց է,— ասաց պապը,— ուրցը ծաղկում է ամռան կեսերին: Սա երեքնուկ է, ավելի վաղ է ծաղկում: Սրանց բաժակները շատ փոքր են ու խորը:

Պապը էլի շատ ծաղիկներ ցույց տվեց, ասաց նրանց անունները և ծաղկելու ժամանակը: Ու ինձ թվաց, թե այդ ծաղիկներն ու դաշտերը, այդ սարերն ու քարերը ճանաչում են պապին, որովհետև բոլորին հարգանքով գլուխ է տալիս նա ու խոսում նրանց հետ:



— Հե՜յ, Գութանասա՜ր, հե՜յ, հե՜յ,— մեկ էլ ձեռքը մոտակա սարի կողմը պարզելով՝ ձայն տվեց պապը:

— Հաաաա՜... սա՜ր եմ... սա՜ր,— պապի ձայնին արձագանքեց սարը:

Ես զարմացա:

— Պա՛պ, սարը խոսո՞ւմ է քեզ հետ,— հարցրեցի ես:

— Հա՛, Մովսե՛ս ջան, էս Գութանասարը իմ շատ հին բարեկամն է... Ջահել օրերին վար ու ցանք եմ արել դրա լանջերին: Հիմա տարին մեկ անգամ բարձրանում եմ գագաթը: Էնտեղ ձյուն կա ամռան շոգին: Էդ ձյունից մի բուռ ուտում եմ, սիրտս հովանում է: Էդ սարի ծերից մեր ողջ աշխարհքը երևում է: Էս տարի իրար հետ կբարձրանանք:

— Սա՞րը,— հարցրեցի ես:

— Հա... ու ես քեզ կսովորեցնեմ նրա հետ խոսելու ձևը...

Ես ժպտացի ու սիրտս լցվեց սար բարձրանալու կարոտով:

Մեղվանոցը կորնգանի արտի եզրին էր, Գութանասարի լանջին, որտեղ շարք-շարք շարված էին ճերմակ ներկված փեթակները: Քիչ հեռու կապտագույն մի վրան էր խփված:

— Ահա՛ իմ մեղվանոցը, ահա՛ իմ վրանը: Մենք այստեղ պետք է ապրենք,— ասաց պապը,— տեղավո՞րվի՞ր, ինչ ուզում ես:



— Ե՛լ, ի՞նչ ես քնել, ե՛լ,— ինձ արթնացրեց պապը:

Ես դժվարությամբ բացեցի աչքերս:

— Ի՞նչ է, պա՛պ, բան է պատահե՞լ,— քնատ հարցրեցի ես:

— Ե՛լ, տղամարդն էսքան չի քնի... Ե՛լ, արևածագը տեսնենք, արևին բարի լույս ասենք... դե՛, շո՜ւտ:

Ես հագա շորերս ու վրանից դուրս ելա: Ցուրտ էր, դողում էի:

— Ա՛յ, հիմա մի խո՞ր շունչ քաշի ու վազի, դե՛...

Ես սրթսրթացնելով վազեցի մինչև կորնգանի արտի եզրը:

— Հը՛, տաքացա՞ր:

— Էլ չեմ մրսում, պա՛պ:

Դաշտերի վրա կանաչ մշուշ էր նստած: Գութանասարի ետևից ելնում էր արևը, որից շյուղ-շյուղ լույս էր պոկվում ու կաթում կանաչ մշուշի մեջ, հետո լույսի շյուղերը զարկվում էին թփերից ու խոտերից կախված ցողի հակինթ կաթիլներին, բյուրավոր ցոլքեր արձակելով խաղում դաշտերի կանաչ ծոփանքի վրա:

Թռչունները երգում էին արտազալի երգը:

Առավոտը բացվում էր:

— Բարի լո՛ւյս, օ՛ր, բարի լո՛ւյս,— մրմնջաց պապը:

— Բարի լո՛ւյս,— ասացի ես:

— Մովսե՛ս ջան, սրանից հետո պետք է շուտ արթնանալ, պետք է սառը ջրով լվացվել... եթե անձրև գա, պետք է անձրևի տակ մնալ: Պետք է սար բարձրանալ ու իջնել: Արևի տակ պետք է խանձվել... Հիվանդանալն ո՞րն է, դեղ խմելն ի՞նչ է... Հասկացա՞ր:

— Հասկացա՛, պա՛պ:

— Դե՛, լվացվենք, նախաճաշենք ու աշխատենք:

Իջանք ձորը: Լվացվեցինք գետակի սառը ջրով ու վերադարձանք վրան: Պապը կանաչների վրա սեղան բացեց: Հաց, պանիր ու մի դեղնաճերմակ շըրջանակ հանեց փեթակից ու դրեց սեղանի վրա:

— Սա մեղրահաց է,— ասաց նա,— անո՛ւշ արա:

Մեղրահացը համով էր, նրանից բյուրավոր ծաղիկների ու կանաչների հոտ էր գալիս:

— Բա՛, Մովսե՛ս ջան, էդ լավ է, որ դու օդաչու ես ուզում դառնալ, բայց մինչև օդաչու դառնալը դու պետք է լավ ճանաչես երկիրը, որտեղ ապրում ես: Հողին հենվելով պետք է բարձրանաս, որ վայր չընկնես...



Ողջ ամառ ես ու պապս ապրեցինք մեղվանոցում, բարձրացանք Գութանասարի գագաթը, որտեղից երևում էր մեր ողջ աշխարհը՝ գեղեցիկ ու կանաչ աշխարհը: Ու ես ոչ մի անգամ չհիվանդացա, և ոչ մի օր տաք շորերը, որոնք ինձ հետ տարել էի, չհագա:

Մի գիշեր, դա իմ մեղվանոցում մնալու վերջին գիշերն էր, պապս ինձ ասաց.

— Մովսե՛ս ջան, գլխարկս մոռացել եմ, էն սարի փեշի մեծ քարի վրա, գնա բե՛ր... հո չե՞ս վախենում:

— Չէ՛, ինչի՞ց վախենամ,— ասացի ես ու վրանից դուրս ելա:

Աստղանկար գիշեր էր: Դաշտերի ու սարերի վրա երկնքից պուտ-պուտ լույս էր կաթում: Ես բարձրացա սարի թիկունքի մեծ քարին, որի վրա դրված էր պապի գլխարկը, վերցրեցի այն ու երգելով վերադարձա:

Պապս ժպտաց:

— Հիմա դու կկարողանաս օդաչու դառնալ, Մովսե՛ս ջան,— ասաց նա ու գլխարկը դրեց գլխին:

Մեկ էլ հռնդյուն լսվեց: Մենք նայեցինք երկնքին: Աստղերի միջով հանդարտ ու տիրաբար, կարմիր լույս արձակելով, լողում էր իմ երազանքի մեծ ու արծաթազօծ օդանավը:





# ԷԼԽՈ

ԶՈՐԻ ԲԱԼԱՅԱՆ

Նկ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՍԱՄՎԵԼՅԱՆԻ

Մոլեգնած ցրտաշունչ քամին փչում էր բաց տունդրայում, իր հետ տանելով ձյան կոշտեր, մերթ այստեղ, մերթ այնտեղ մըռընչացող մրրկասյուներ հանելով երկինք: Մարդիկ գետնահար կըռացած՝ դժվարությամբ առաջ էին շարժվում մշուշի միջով, հաճախակի խրվելով փխրուն ձյունահյուսքերի մեջ: Նրանք տուն էին շտապում, ամեն քայլափոխի ուժերի նոր հորդում ըզգալով իրենց երակներում, որովհետև ամեն մի քայլը, որքան էլ որ աննշան լիներ այն, մոտեցնում էր տանը: Չնայած հոգնածությանը, դեռևս վստահորեն էր քայլում նաև փոքրիկ Էլխոն, որն ինչպես եղջերվաբույծ նախրապանները, ինչպես իր պապը, լավ գիտեր, որ շուտով, շատ շուտով հասնելու են չում:

Մնում էր վերջին մի քանի մետրը, բայց թանձր ձյունամշուշի պատճառով դեռևս չէր երևում միայնակ կացարանը, թեև արդեն որոշակիորեն լսվում էր պահապան շների ընդհատուն հաչոցը: Այդ մի քանի մետր տարածությունը մարդիկ անցան վազքով: Մեկը մյուսի ետևից նըրանք հևասպառ նետվեցին չում ու անմիջապես ընկան ճարճատուն խարույկից անջատվող բուրավետ ծխի հաճելի գիրկը. Խարույկը վառվում էր եղջերվի մորթիներից շինված, ավելի ճիշտ կլինի ասել կարված՝ չումի կենտրոնում: Նրանից ցայտող կայծերը հասնում էին գրեթե սրածայր գմբեթին:

Այսպես է եղել միշտ, բոլոր ժամանակներում, ամեն անգամ ահա այսպիսի աշխարհակործան բուք ու բորանից հետո, մարդիկ սառած ու տանջված երբ մտել են չում, ամենակրտսերը հարցրել է ամենաավագին.

— Ասա՛, պապի՛կ, իսկ ի՞նչ են արել մարդիկ, երբ աշխարհում չում գոյություն չի ունեցել:

Նույն հարցը տվեց նաև փոքրիկ Էլխոն, որ դեռ մի տարի հետո էր դպրոց գնալու: Պապիկը նախ շփոթվեց, ապա մի տեսակ հուզվեց: Նա արդեն մոռացել էր, որ ինչ-որ ժամանակ, շատ ու շատ վաղուց, ինքն էլ է, ինչպես հիմա իր թոռնիկը, ցրտից ու սառնամանիքից փրկվելով, մտել տաք չում ու սիրտն այնպե՜ս է հրճվանքից ճխացել, և նա ակամա հարցրել է իր պապիկին, թե մարդիկ ինչպես են ապրել առանց չումի: Ու եթե հիմա նա մոռացել է այդ, նշանակում է

# ԱՐԵՎԸ

ԶԱՎԵՆ ԿԱՍՅԱՆ

Լեռը վարթնում է քնից,
Ու ձորերն են արթնանում,
Արտույտն ելել է բնից,
Հանդերին լույս է տանում...
Լույս է տանում հանդերին,
Խինդ է տանում ու գարուն,
Երգ է տանում ջրերին
Ու երազներ վարարուն...
Ու արտույտի երգի հետ
Հավք ու հովեր արթնացել,
Խոտերի մեջ բուրավետ
Իրենց հեքիաթն են բացել...
Իրենց հեքիաթն են բացել
Գարնան մասին ծաղկաբույր,
Մի սիրտ, մի շունչ են դարձել
Առու, վտակ ու աղբյուր...





մոռացել է և այն, թե ինչ պատասխանեց իր պապը՝ տունդրայում ապրող երեխաների այդ մշտական հարցին: Հենց դրա համար էլ շփոթվեց ծերունին: Իսկապես ի՞նչ էին անում մարդիկ, երբ չում գոյություն չուներ: Իսկ մի՞թե այդպիսի ժամանակ է եղել,— անցավ ծերուկի մտքով ու նա շուտասելուկի պես վրա բերեց.

— Աշխարհում միշտ էլ եղել է չումը, Էլխո՛:

— Իսկ շա՛տ, շա՛տ առաջ,— ձեռ չէր քաշում տղան:

— Շա՛տ, շա՛տ առաջ էլ է եղել չումը: Մարդը չի կարող առանց չումի լույս գնալ, ինչպես եղջերուն՝ առանց տունդրայի:

Այդ գիշեր հիանալի լսվում էր, թե չումի եղջերենուց շինված պատի ետևում ինչպես է ոռնում բուքը: Դժվար էր որոշել քամու ուղղությունը, որովհետև մեկ չումի մի կողմն էր ուռչում թմբուկի պես, մեկ՝ մյուս: Փոքրիկ Էլխոն, նրա պապը և երկու ջահել հովիվները, իրենց կուկուլների[1] մեջ պառկեցին քնելու, ոտքերը մեկնելով խարույկի կողմը: Ասում են, քքի ժամանակ տունդրայի բոլոր բնակիչները՝ թե՛ մարդիկ, թե՛ գազանները, նույն երազն են տեսնում: Տեսնում են մրրկայուներ: Դա նրանից է, որ ինչքան էլ խոր թաղես գլուխդ կուկուլի մեջ, միևնույն է, լսում ես քքի ոռնոցը: Դրա համար էլ, եթե հանկարծ բուքը դադարում է, տունդրայի բոլոր բնակիչները՝ և՛ մարդիկ, և՛ գազանները, արթնանում են միանգամից: Արթնանում են լռությունից:

Այս անգամ էլ եղավ այնպես, ինչպես միշտ. գիշերվա կեսին հանկարծ դադարեց բուքը, և չումըն արթնացավ: Փոքրիկ Էլխոն նույնպես բացեց աչքերը: Նա լուռ սպասում էր, թե ինչ կասի պապը: Գլուխը դուրս հանելով գիշերվա ընթացքում տաքացած կուկուլից, Էլխոն սևեռուն նայում էր մթությանը, ասես ցանկանալով տեսնել պապիկի կնճռապատ, բայց բարի, մանրիկ աչքերով ու լայն այտոսկրներով դեմքը:

— Դժվար է լինելու,— ասաց ծերուկը, դանդաղ դուրս սողալով կուկուլի միջից ու թքելով շըրթունքներին կպած եղջերվի մազերը:

— Ի՞նչ է պատահել,— հարցրեց նախրապաններից մեկը:

— Մի՞թե չեք զգում որքան տաք է: Ամբողջ գիշեր հարավային քամի է փչել և ցիկլոնն իր հետ տաք օդ է բերել:

— Իսկ մի՞թե վատ է տաք օդը,— հարցրեց Էլխոն:

— Վա՛տ է, Էլխո՛: Շա՛տ վատ է: Երբ ձմռան կեսին հարավից ցիկլոն է փչում, նշանակում է նա իր ետևից անձրև է բերելու: Եղջերուները կկոտորվեն:

— Ինչո՞ւ կկոտորվեն,— չէր կարողանում հանգստանալ Էլխոն:

— Որովհետև անձրևից հետո անմիջապես սառնամանիք կլինի և ամբողջ տունդրան սառցե զրահ կհագնի:

Չումում կրկին լռություն տիրեց: Լսվում էր միայն, թե մթության մեջ ինչպես են մարդիկ անշտապ հագնվում ու ինչպես են փաթաթում իրենց կուկուլները: Էլխոն հասկանում էր, թե պապիկն ինչու է տունդրայի սառցապատվելու մասին այդպես տագնապով խոսում: Չէ՞ որ եղջերուները սնվում են միմիայն մամուռով: Նրանք իրենց կճղակներով փորում են ձյունը այնքան, մինչև որ հասնում են հողին, որտեղ կլոր տարին կանաչ ու հյութեղ եղջերվամամուռ է աճում: Էլխոն մի անգամ նույնիսկ համտես է արել եղջերուների այդ սննդի մատղաշ տերևները: Դըրանք մի փոքր դառնահամ, բայց և այնպես համեղ թվացին նրան: Եվ Էլխոն հաճախ էր մտածում, որ ինքը սիրում է տունդրայով մեկ սփռված այդ խոտը, որովհետև առանց դրա եղջերուները մի օր էլ չեն կարող ապրել:

Ծերունին իրավացի էր: Լուսադեմին ամբողջ տունդրայում ձյունախառը փշոտ անձրև տեղաց: Թվում էր, երկինքն ու գետինը միացել են ջրի միաձույլ մի հեղեղով, որի միջով ցած էին սուրում ձյան ճերմակ փաթիլները: Եղջերվապահները գիտեին, որ նման դեպքերում միայն մի փրկություն կա եղջերուների համար. ամբողջ նախիրը պետք է քշել բարձունքները, սարերը, որտեղ ձմռանը երբեք անձրև չի գալիս:

Չումում մնաց միայն փոքրիկ Էլխոն և թավամազ շիկագույն շունը, ինչպես նաև երկու ջահել եղջերու, որոնց եղջյուրները նախորդ օրը ծերուկը սղոցել էր, որպեսզի սրանց ընտելացներ լըծելու համար: Եղջերուները նույն հասակի էին, բայց տարբերվում էին գույներով: Ասես նրանց դիտմամբ էին այդպես ներկել՝ մեկը սև էր, մեջքին ճերմակ խոշոր խալեր, մյուսը ընդհակառակը՝ ճերմակ, մեջքին սև խալեր: Երբ նրանք վազվզում էին չումի շուրջը, աչքերդ շաղվում էին այդ խալերին նայելիս:

Ճամփա ընկնելուց առաջ ծերուկը պատվիրեց Էլխոյին՝ շարունակ հետևել խարույկին, չըխնայել մայրու ճյուղերը, որ կըտրտված դարսված էին չումի կողքին: Ծերուկը միշտ ասում էր, որ տունդրայում ամենակարևորը տաքությունն է: Դայն այլևս ոչ մի բան չպատվիրեց թոռնիկին: Նա չէր կասկածում, որ Էլխոն կարող է ամեն ինչ անել. պատրաստել և՛ թեյ, և՛ եղջերվամիս: Չէ՞ որ դա շատ հեշտ է: Մրից սևացած կաթսայի մեջ պետք է ձյուն լցնել ու կախել խարույկի վրա ամրացված կեռիկից: Երբ այդ ձյունը հալվի, պետք է դարձյալ ձյուն ավելացնել այնքան, մինչև որ ջուրը բռնի կաթսայի կեսը: Հետո վստահ կարելի է եղջերվամսի սառած կտորները գցել ջրի մեջ: Ահա բոլորը: Այլևս ոչինչ հարկավոր չէ: Նույնիսկ չպետք է աղ անել: Որովհետև պապիկը, դեռ միսը մշակելիս, բավականաչափ աղ է ցանել: Մի ժամ հետո կարելի է

[1] Եղջերվի մորթուց կարված բնապարկ:



երկար սրածայր մետաղալարով հանել կտորները և ուտել:

Որիկնադեմին անձրևը դադարեց: Էլխոն դուրս եկավ չումից, որպեսզի մի գիրկ մայրու ճյուղեր բերի և զգաց, որ շուրջն ամեն ինչ արդեն սառցապատվել է: Նա հիշեց պապիկին, որը դեռ գիշերը, դեռևս մինչև անձրևի գալը, արդեն՝ գիտեր ինչ էր լինելու: Եվ Էլխոն մի անգամ էլ համոզվեց, որ իր պապիկը ամեն ինչ գիտե: Ու եթե նախիրը սարերը չքշեին, ապա եղջերուները բոլորը կկոտորվեին: Իսկ հիմա նրանք փրկված են իր պապիկի շնորհիվ: Ու Էլխոն այնպե՜ս ցանկացավ այդ պահին լինել պապիկի մոտ: Բայց չի կարելի: Նա դեռ շատ փոքրիկ է: Նա տաք եղջերվամիս կերավ, մի գավաթ քաղցր թեյ խմեց, հետո հավաքեց ուտելիքը արկղի վրայից, որ չումում փոխարինում էր սեղանին, և մսի մնացորդները տվեց շանը: Մի մեծ կույտ փայտ դարսելով իր կողքին, Էլխոն մտավ կուկուլի մեջ և քնեց:

Նա խոր չէր քնում: Չումում լսվում էր շան համաչափ ֆըսֆըսոցը, որ շնթռել էր մուտքի մոտ, և խարույկի ճրթճրթոցը: Դրա համար էլ Էլխոն երազում շուն և խարույկ էր տեսնում: Նա մի քանի անգամ արթնացավ, որպեսզի փայտ ավելացնի խարույկին, կիսաձայն մի երկու խոսք ասաց շանը և կրկին քնեց: Կեսգիշերից հետո նա ավելի հաճախ սկսեց արթնանալ: Վախենում էր, որ խարույկը կմարի: Թեև, առանձնապես սարսափելի չէր լինի դա: Չումում լուցկի կար, և Էլխոն կարող էր նորից խարույկ վառել: Բայց քանի որ պապը խնդրել էր, որ կրակը չմարեր, ուրեմն պետք էր հետևել, որպեսզի չմարեր:

Վաղ առավոտյան գլխին դնելով խալտարղետ մալախայը[1] և հագնելով տաք տորբազները[2], դուրս եկավ չումից: Նա անմիջապես կկոցեց իր առանց այդ էլ նեղլիկ աչուկները, և դրանք բոլորովին չքացան նրա դեմքից: Տունդրան ողողված էր վառ նարնջագույն լույսով: Ձմռանը, հատկապես առավոտյան, պարզկա օրերին, հյուսիսում արեգակը նարնջագույն է լինում: Մի փոքր ընտելանալուց հետո, արդեն հեշտությամբ կարողանում ես նայել նրան: Արևի երկու կողմերում վեր են սլանում ուղղաձիգ ծիածանները, որոնց կորյակները «արևի զավակներ» են անվանում: Կորյակները գիտեն, որ երբ ցերեկային լուսատուի կողքերին հայտնվում են նետերի պես ուղիղ ծիածանները, նշանակում է տունդրայում շատ ցուրտ է լինելու: Եվ, իսկապես, քիչ հետո Էլխոն զգաց, թե սառնամանիքն ինչպես է դաղում իր դեմքը: Նա ցանկացավ վերադառնալ չում, բայց քիչ հեռվում տեսավ եղջյուրները կտրած եղջերուներին և կանգ առավ: Նրանք սեղմվել էին իրար և կըճղակներով խփում էին կարծրացած ձյանը: Ամեն հարվածից հետո սառցի կտորներ էին թռչում չորս կողմը: Էլխոն խղճաց քաղցած եղջերուներին, որ ապարդյուն ջանում էին եղջերվամամուռ հանել քարացած ձյան տակից: «Կսատկեն»,— անցավ տղայի մտքով: Նա շտապ մտավ չում և շուտով դուրս եկավ այնտեղից շքեղ կուխլյանկան հագած, բահը ձեռքին:

Երբ Էլխոն մոտեցավ, եղջերուները դեսուդեն փախան: Նա ընկըսեց բահով ջարդել սառույցը: Եղջերուները դեռևս հեռու էին մնում տղայից: Էլխոն հիշեց, որ պապը քանիցս ասել է, թե եղջերուները փաղաքշանք չեն սիրում: Որքան էլ ընտելացնես, միևնույն է, երբ փորձում ես մոտենալ, փախչում են: Ա՛յ, հիմա էլ Էլխոն մոտեցավ, որ օգնի նրանց եղջերվամամուռ հանելու, նրանք խուսափեցին իրենից, ինչպես գայլից:

Շուտով նա մի մեծ փոս փորեց, որի հատակին երևաց կանաչ մամուռը: Տղան ուրախացավ, նաև իրեն զգաց հորթուկ, որին առաջին անգամ հաջողվել է սեփական կճղակներով փորել ու հասնել կանաչ մամուռին: Էլխոն դուրս եկավ փոսից և, մի քիչ հեռանալով, սկսեց մեկ ուրիշ փոս փորել: Նա բահով անվերջ հարվածում էր սառած ձյանը ու ճակատին իջած մալախայի տակից տեսնում, թե եղջերուները՝ մեկը սև, մեջքին ճերմակ խալեր, մյուսը ճերմակ՝ մեջքին սև խալեր, ինչպես են վախվխելով մոտենում փորված տեղին, զգույշ քայլելով չորս կողմ նետված սառցե խճի միջով:

Էլխոն փորում էր առանց շունչ առնելու: Կոշտ մորթուց կարված ձեռնոցները խանգարում էին նըրան, թրջվում քրտինքից ու սառնամանիքից փայտանում: Տղան ձեռքերից հանեց կոշտացած ձեռնոցները և նետեց ձյան վրա: Այժմ ավելի հարմար էր գործածել բահը: Ճիշտ է, սկզբում մատները սառեցին, բայց հետո դադարեցին ցուրտն զգալուց: Եղջերուները ասես կենդանացան աչքի առաջ: Ուրախ ոստոստում էին մի փոսից մյուսը: Էլխոն բարձրացավ ձյունակույտի վրա, ուղղվեց ու նայեց իր աշխատանքին: Հայացքով ընդգրկեց բոլոր փոսերն ու զարմացավ: Հավատալը չէր գալիս, որ ինքն էր մենակ փորփրել այդ հսկայական ճերմակ դաշտը: Երբեմն եղջերուները բավական մոտենում էին փոքրիկ տղային և քնքշորեն նայում նրան իրենց միշտ թաց, խոշոր աչքերով ու, նույնիսկ, ասես ժպտում էին: Նրան թվում էր, թե եղջերուները ասում են. «Շնորհակալություն, Էլխո: Դու իսկական ապպա ես»: Եվ նա հըպարտանում էր դրանով, որովհետև ապպան նախիրի առաջնորդն է: Ապպայից է կախված բոլոր եղջերուների կյանքը:

(Վերջը՝ հաջորդ համարում)

[1] Եղջերվի մորթուց կարված գըլխարկ:

[2] Եղջերվի մորթուց կարված երկարաճիտ կոշիկներ:



# ՄԻ ԱՆԳԱՄ

ՍՈՍ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ (ինժեներ-երկրաբան)

եպքը, որի մասին հիմա պատմելու եմ, իրական է, տեղի է ունեցել մի քանի տարի առաջ: Եղելությանը ոչինչ չի ավելացված և ոչինչ չի պակասեցված, փոխված են միայն երկրաբանների անունները:

Երրորդ օրն էր քայլում էին, քարանմուշներով լեցուն ծանր ուսապարկերի տակ կքած, երբեմն հենվելով ծեծնափայտի նմանվող երկարակոթ երկրաբանական մուրճերին: Երեսները մաշկակալել էին, սմքել, ուսապարկերի փոկերը կտրում էին ուսերը, քաշում դեպի գետին, և յուրաքանչյուր քայլ կամքի լարում էր պահանջում: Թվում էր, թե անողոք արևն ամեն ինչ այրել է այստեղ, նույնիսկ քարերը, որոնք այրվելուց գորշ գույն էին ստացել: Հիմա նա, այդ արևը, ուրիշ կենդանի ու անկենդան բան չգտնելով, իր հրե ճառագայթներն ուղղել էր հատկապես նրանց վրա, միայն նրանք էին քայլում այս հրաշեկ անապատում, մեկ էլ Արաքսն էր, որ կարծես պգուշավոր, ափերին նայելով, իր պղտոր ջրերը տանում էր դեպի Կասպիականը:

Եվ այնուամենայնիվ մեկ էլ տեսար շարժվում է մի կենդանի արարած: Լեռնապարի ծերպերին անսպասելի հայտնվում են ժամապահ խոյի հսկա եղջյուրները, տեղանքին մերվելով փախչում է օձը, միայն խշշոցով մատնելով իրեն:

Երկրաբաններից համեմատաբար երիտասարդի՝ Աշոտի ուսից մարտական կարաբին էր կախված: Ի՞նչ գիտես ինչ կարող է պատահել: Նրանք դուրս էին եկել մի քանի օրով և անտառներից իջել Արաքսի հովիտը: Հրացանը ծանր էր, բայց Աշոտը հույսը չէր կտրում, որ հնարավորություն կունենա օգտագործել այն: Մինչև նա կիջեցներ հրացանը, քարայծն անհետացավ: Դա եղավ նույնքան անսպասելի, որքան անսպասելի հայտնվել էր նա: Ավագ ընկերները ներողամտաբար ժպտացին: Փորձից ելնելով, նրանք խուսափում էին ավելորդ բեռ վերցնելուց: Երկրաբանի համար թեթևագույն իրն անգամ ճանապարհին քաշ է ձեռք բերում, ծանրանում է:

Ուժասպառ էին արդեն ու քաղցած, երազում էին բաղնիքի ու անկողնու մասին: Ուրեմն այդ օրը պետք էր անպայման տուն հասնել: Եվ նրանք անխոնջ քայլում էին:

Երբ դուրս եկան տափարակը, անբացատրելի բնազդով զգացին իրենց հետևող հայացքը, անորոշ տագնապ և, պատճառը փնտրելով, շրջվեցին դեպի ոչ հեռու գտնվող քարակույտը... Ու տեսա՜ն... Տեսան ու կարկամեցին: Դա մի հսկա հովազ էր, որն աննդհատ հետևում էր նրանց շարժումներին: Շքեղ էր իր պուտավոր մորթով, լարվածության մեջ սլացիկ ու կատարյալ մարմնով... Դարպասես գեղեցիկ էր բնության այդ ստեղծագործությունը: Մարդիկ դեռ երկար կլանված ու ապշահար կդիտեին կենդանուն, եթե չլինեին նրա դեղին, մեծ, կատվի աչքերը, որ վառվում էին սառը, մետաղյա փայլով, գիշատիչ կրակով: Դրանք ոչխարի հեզ, ներողամտություն հայցող աչքեր չէին, այլ բութ, անողոք, անխնա և սարսափազդու: Լույսի ու գույների համադրությունը նրան ավելի մեծ ու սարսափելի էր դարձնում, քան նա կար:

Ըստ երևույթին հովազը հասկացավ, որ երկոտանի անծանոթները նկատել են իրեն, բայց նրանք առանձին վտանգ չեն ներկայացնում, ուստի հարձակվել չարժեր, մանավանդ որ անծանոթ լինելով, իրեն համար որս էլ չէին: Համենայն դեպս թեթևակի ցույց տալով ժանիքները, խուլ մռնչալով և նրբագեղ պոչով մի քանի անգամ գետնին հարվածելով, շրջվեց և մանր քայլերով հեռացավ, ստեպ-ստեպ դարձնելով գլուխը, կարծես իմանալու համար, թե ինչ են անում իր անդորրը խանգարողները: Երբ բավական հեռացել էր, սկսեց ավելի արագ շարժվել:

Անա այդ պահին Աշոտը անթույլատրելի սխալ կատարեց: Նա արագ իջեցրեց կարաբինը և շտապելով, գրեթե առանց նշանառության կրակեց:

Ըստ անվտանգության տեխնիկայի կանոնների, երկրաբաններին չի թույլատրվում կրակել չհարձակվող գիշատչի վրա: Զենքը նրանց տրվում է միայն ինքնապաշտպանության համար: Այս կանոնը գիտեին մյուս երկուսը՝ Հայկազը և Ռոբերտը, բայց արգելել չհասցրին, թերևս և չուզեցին: Որսը խիստ գայթակղիչ էր, հավկվագյուտ, նման գազան կարող էր երբեք այլևս չհանդիպել:

Հովազը գլորվեց գնդակի հարվածից: Այդ պահին տղաների սիրտը լցվեց անափ ուրախությամբ: Բայց հաջորդ ակնթարթին գազանը վեր թռավ տեղից, աճեղ



# ԱՄՌԱՆ ՇՈԳԻՆ

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

մռնչոցով լցրեց ձորը և քամու պես նետվեց դեպի մարդիկ:

Այնքան անակնկալ, արագ կատարվեց այս ամենը, որ տղաները չկարողացան որոշել իրենց անելիքը և, ենթարկվելով առաջին բնազդական զգացումին, նետելով ինչ հնարավոր էր, ահաբեկված փախան տարբեր կողմեր: Աշոտը գցեց հրացանը, իսկ Ռոբերտը փախչում էր՝ ուսապարկը մեջքին: Հովազը, կարծես իմանալով, որ իրեն Աշոտն է վիրավորել, նետվեց նրա վրա: Աշոտն ի՞նքը սայթաքեց, թե՞ վիրավոր գազանն էր կորցրել շարժումների համագործակցությունը, բայց նա թռավ տղայի մարմնի վրայով, պատառոտելով վերնաշապիկը: Ապա վերադարձավ: Բայց Աշոտն արդեն հասցրեց վեր կենալ և հիմա մարդն ու գազազած գիշատիչը կանգնած էին դեմ առ դեմ: Հովազն առաջ էր գալիս մռնչալով, հսկայական երախը բաց՝ հարմար պահ էր որոնում ցատկելու համար: Իսկ մարդը ետ-ետ էր գնում: Սարսափը տեղի էր տալիս, և Աշոտը տենդորեն փնտրում էր պաշտպանվելու միջոցներ, փրկության ելք: Նա կարողացավ նկատել ոտքի մոտի մուրճը: Կռացավ մուրճը վերցնելու, և հովազը նորից ոստնեց: Այս անգամ Աշոտին փրկեցին բրեզենտե անդրավարտիքն ու կիրզե երկարաճիտ կոշիկները: Սուր մագիլները թեև պատռեցին ամուր բրեզենտը և խրվեցին Աշոտի ազդրի մեջ, բայց նա մնաց ոտքի վրա և դա փրկեց նրան հոշոտվելուց: Հովազի ուսից առատ արյուն էր թափվում: Աշոտը նորից ետ-ետ էր գնում մուրճը իրենից առաջ պահած, իսկ հովազը առաջ էր գալիս, թաթով հարվածելով մուրճին, ինչպես վարժեցված վագրերը կրկեսային ներկայացման ժամանակ:

Սակայն այդ պահին ընկերներից Հայկազը վերադարձավ իրեն: Աշոտի ու գազանի մենամարտը նրա մեջ խոսեցրեց թե՛ իր ավագության ու պատասխանատվության զգացումը, և թե՛ ամոթը՝ իր ակամա փախուստի համար: Անհաշվենկատ ու անզեն, նա վազեց դեպի մենամարտողները, և շատ վատ կլինեին Հայկազի գործերը, եթե նույնպես ուշքի եկած Ռոբերտը, որի ձեռքին արդեն մուրճ կար՝ չգոռար. «Վերցրո՛ւ մուրճը, մո՛ւրճը վերցրու»:

Հայկազը վերցրեց մուրճը և հարձակվելով գիշատչի վրա, հարվածեց գլխին: Հովազն իր հերթին գետին գլորեց նրան և քիչ մնաց երախն առներ Հայկազի գլուխն ու կոկորդը, եթե օգնության հասած Ռոբերտը չհարվածեր հովազի ողնաշարին: Հարվածն ուժգին էր, և գազանը կորցրեց շարժվելու ունակությունը, ընկավ կողքի: Բայց մագիլները խրվել էին Հայկազի շորերի մեջ, ճանկռել կուրծքը: Հայկազն աշխատում էր վեր կենալ, հրում էր կենդանուն մուրճով ու ոտքերով, իսկ Ռոբերտն ու Աշոտը անընդհատ հարվածում էին հովազի գլխին ու ողնաշարին: Գազանը ռռնում էր, գլուխը շարժում այս ու այն կողմ, արյունով լցված աչքերը կատաղություն էին արտահայտում, բայց նա ընկած տեղից բարձրանալու ուժ չուներ այլևս, ջարդվել էր ողնաշարը, թեև դեռ կենդանի էր: Տղաները ետ քաշվեցին: Ռոբերտը վերցրեց ոչ հեռվում ընկած կարաբինը և վերջ տվեց կենդանու տանջանքներին: Զարմանալին այն էր, որ վերքեր ուներ նաև Ռոբերտը: Նա չէր հիշում, թե հովազը ե՞րբ է հասցրել վիրավորել իրեն: Հագուստն էլ պատառոտված էր ու արյունոտ, ինչպես մյուսներինը: Ամենից վտանգավորը Աշոտի ազդրի վերքն էր, դա խորն էր, անընդհատ արյուն էր հոսում: Լվացին ախտահանող նյութով, կապեցին: Հացի նստեցին, կերան անձեռնմխելի պաշարը՝ մի պահածո և հաց ու պանիր: Ապա հանեցին հովազի մորթը և արդեն անշտապ ու դանդաղ, մեկը մյուսին օգնելով, ճանապարհ ընկան լուսնի լույսով:

Գազանի մորթին Նախիջևանում հանձնեցին որսորդական խանութին, որովհետև նրանցից ոչ մեկը չէր ուզում վերցնել միայն իրեն, իսկ երեք մասի բաժանելը նպատակահարմար չգտան:

Արշավախմբի իրենց սիրելի պետից նրանք նկատողություն ստացան անվտանգության տեխնիկայի կանոնները խախտելու, ինչպես նաև հազվագյուտ մորթին արշավախումբ չբերելու համար: Բայց նրանց հայտնեց նաև թեթևակի շնորհակալություն՝ անձնուրաց ընկերասիրություն ցուցաբերելու համար, «թեթևակի»՝ քանի որ նման ընկերասիրությունը ինքնին հասկանալի և բնական վարքագիծ է երկրաբանության ասպարեզը ոտք դրած ամեն մեկի համար:

Ապա տղաները, ո՛չ այն է ուրախ, ոչ այն է տխուր ու գլխիկոր, ուղևորվեցին հիվանդանոց:

## ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# ՆՐԱ ՏԱՐԵՐՔԸ

Հինգ տարի է, ինչ Լենինական քաղաքի № 13 դպրոցի Վարոս Թութխալյանի անվան դրուժինան ղեկավարում է ավագ ջոկատավար Մկրտիչ Նախշքարյանը: Պիոներական ու մանկական կոլեկտիվների իսկական կազմակերպիչը բոլորին աշխատանքի մեջ ներգրավելու համար սկզբում առարկայական օլիմպիադաներ ու պատանի մասնագետների մրցություններ անցկացրեց, նկարիչների աշխատանքները ցուցադրեց: Երբ տրվեց «Միշտ պատրաստ» երթի մեկնարկը, ընկեր Նախշքարյանը պիոներներին ծանոթացրեց երթուղիների բովանդակությանը և յուրաքանչյուր ջոկատի, օղակի ու առանձին աշակերտի հանձնարարություններ տվեց:

Եվ այսպես, պիոներսենյակը դարձավ ոչ միայն պիոներների, այլև բարձր դասարանցիների հավաքատեղին:

Սկզբում բոլորը չէ, որ հաճույքով էին մասնակցում միջոցառումներին, բայց երբ պիոներների լավագույն աշխատանքների մասին սկսեցին խոսել դպրոցում ու քաղաքում, հոդվածներ տպագրվեցին մանկական հանդեսներում ու թերթերում, գործերի հեղինակները ինչպես որ պետք է խրախուսվեցին, արդեն բոլորը դարձան միջոցառումների մասնակիցներ:

— Երկու տարի առաջ մի այսպիսի դեպք պատահեց,— պատմում է ավագ ջոկատավարը,— մեր դպրոցի ճանաչված պատանի մարզիկներից մեկը պետք է կոմերիտմիության շարքերն անցներ, սակայն պիոներական միջոցառումներից անհարգելի պատճառով բացակայելու համար դրուժինայի խորհուրդը երաշխավորագիր չտվեց նրան: Եվ դա յուրօրինակ դաս հանդիսացավ բոլորի համար:

Այժմ դրուժինայի բոլոր անդամները ձգտում են սովորել առանց «երկուսների» և բարձրացնել առաջադիմությունը: Այս ուսումնական տարվա առաջին կիսամյակի արդյունքներով բոլոր հոկտեմբերիկական խմբերի առաջադիմությունը հասել է 100 տոկոսի: Նույնպիսի առաջադիմության են հասել և պիոներական չորս ջոկատներ, իսկ պիոներական ու կոմերիտական ակտիվը սովորում է միայն «լավ» և «գերազանց» գնահատականներով:

Դրուժինան ակտիվորեն է մասնակցում համամիութենական պիոներական շարժումներին ու մրցություններին: Պիոներները հավաքել և պետությանն են հանձնել 3 տոննա թղթի մակուլատուրա, 5 տոննա մետաղի ջարդոն, վիետնամցի իրենց հասակակիցներին են ուղարկել գրենական պիտույքներ, անցկացրել են հավաքույթներ, միտինգներ՝ «Մենք քեզ հետ ենք, Չիլի», «Ազատություն Լուիս Կորվալանին» նշանաբանով:

Կարմիր հետախույզներն ու պատանի թիմուրականները հաղթանակի 30-ամյակի կապակցությամբ արշավների են դուրս եկել Թամանյան դիվիզիայի հետքերով, ստեղծել են նրա մարտական ուղու քարտեզը, հանդիպում են կազմակերպել դիվիզիայի նախկին հրամանատար, պահեստի գեներալ-մայոր Նվեր Սաֆարյանի և մարտիկների հետ:

Նախապատրաստում են ապագա փառքի սրահի ցուցանմուշները՝ «Մեր դպրոցի շրջանավարտները Հայրենական պատերազմում» խորագրով:

Այս ու բազմաթիվ այլ հետաքրքիր միջոցառումներով ու գործերով է առաջնորդում դրուժինան, պիոներների ավագ ընկերն ու բարեկամը՝ Մկրտիչ Նախշքարյանը:

*ԹԵՎՈՍ ՊԵՏՐՈՍՅԱՆ*

# Ի՞ՆՉ ՉԻ ԿԱՐԵԼԻ

*ՅՈՒՐԻ ԴՐՈՒԺԻՆՆԻԿՈՎ*

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

## ԳԱՅԼԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆ

Մի անգամ երեխաները դպրոց էին բերել մի ամսագիր: Նրա մեջ մի տարօրինակ նկար կար, բավականաչափ մեծ, տղան քայլում էր չորեքթաթ, ատամները մերկացրած: Հոդվածից մենք իմացանք, որ նրան դաստիարակել են ջունգլիներում՝ գայլերը: Նա ուտում էր հում միս, իսկ երբ բարկանում էր, գռմռում էր:

—Դա հո Մաուգլի՞ն է,— բացականչեցինք մենք:

Սակայն հեքիաթի Մաուգլին համակրելի է: Իսկ սա մի ինչ-որ վայրենի բան էր: Հետաքրքրվելով «վայրենի» երեխաներով, շուտով մենք՝ աշակերտների հետ, շատ հոդվածներ հավաքեցինք նրանց մասին:

Մի հոդվածում կարդացինք, որ 1956 թվին հյուսիսային Հնդկաստանում, Ագրա գյուղից մի տասը կիլոմետր հեռու, գետակի մոտ, որսորդները հայտնաբերել են գայլեր, նրանց հետ էլ՝ մի անհասկանալի արարած: Սկսել են օդի մեջ կրակել, գայլերը փախել են: Այդ արարածն էլ չորեքթաթ փախել է նրանց հետևից: Բայց հաջողվել է նրան բռնել: Դա մի տղա էր՝ երկար մազերով, երկար եղունգներով: Նա կծում էր և արձակում խուլի խռնչյուն հիշեցնող ձայներ: Վերադարձի ճանապարհին, որսորդներին կրնկակոխ, գողեգող գնում էր մայր գայլը: Տղային տարան քաղաք: Նա ուտում էր հում միս, շրթունքներով այն հավաքելով հատակից, խմում էր տաշտակից, փորձում էր փախչել: Հարկավոր եղավ պահել նրան փան-

դակում: Գտան երեխայի ծնողներին, որոնք ճանաչեցին նրան գլխի վրա եղած սպիից: Տղային կոչում էին Պարասրամ: Դեպքը պատահել է 1951 թվին: Նա մոր հետ քնած է եղել հատակին: Մայր գայլը հարձակվել է մոր վրա, կծոտել նրան, երեխային առել փախել:

Հնդիկ գիտնականները, որոնց ես հետո գրեցի, ուշի-ուշով ուսումնասիրել էին դեպքը և հաղորդեցին, որ գայլերի կողմից մարդ դաստիարակելը «բացարձակապես հավաստի փաստ է»: Ծնողները և բժիշկները երեխային շրջապատեցին հոգատարությամբ: Տղան թույլ էր, բայց չորեքթաթ քայլում էր ավելի արագ, քան կարելի էր այդ անել ոտքի կանգնած: Մի տարի անց հաջողվեց նրան մի քանի բառ սովորեցնել, բայց երբ նա գազանի մորթի էր տեսնում, ցույց էր տալիս ատամները, ինչպես գայլը:

## «ՎԱՅՐԵՆԻ ՄԱՐԴԻԿ»

Ինչո՞ւ և ինչպե՞ս է գազանը երեխա տանում իր որջը, հարցնում էին երեխաներն ինձ:

Տաժանելի շոգերը հնդկական խուլ գյուղերում ստիպում են մորը քնել ջունգլիներին մոտիկ, մերկ գետնին, երեխաների հետ միասին: Մայր գայլը, երբ որսորդները սպանում են նրա ձագերին, կորուստը ինչ-որ ձևով աշխատում է վերադարձնել: Փոքրիկ արարածին իր որջը բերելով, կարող էր նրան խեղդել, բայց իր կրծքում մնացած կաթը հարկավոր է երեխային տալ: Քաղցած երեխան սկսում է նրան ծծել: Մայրական բնազդը ելք է գտնում, և այստեղ անհավանական ոչինչ չկա: Գայլերի որջերում որսորդները երբեմն հանդիպում են գառների կամ թուլաների: Մոսկվայի երեխաները ծանոթ էին Կինույի արջուծուհուն, որը շուն էր մեծացրել: Կատուն, պատահում է, որ կերակրում է թուլային կամ շունը՝ կատվաձագին:

Հայտնի է XIX դարին վերաբերվող այսպիսի մի դեպք: Գյուղացու տունը հրդեհվել էր, տանիքը փլվել, տանտերերը կռիվել էին, նրանց շունը բոցերի միջից հանել էր երեխային, թաքցրել քանդված մարագում, պաշտպանել ցրտից և կերակրել, մինչև որ հարևանները իմացել էին և վերցրել տղային, տարել որբանոց:

Դեռևս XVIII դարում, անտառում մեծացած և կենդանիների մնած երեխաներին Կարլ Լիննեյը «Բնության սիստեմները» գրքում առանձնացրել էր «Վայրենի մարդիկ» խմբում:



Իսկ ի՞նչ եղավ Պարասրամը: Ամիսներ տևող, համբերատար աշխատանքից հետո, բժիշկներին հաջողվեց գազանային մի քանի սովորություններից ետ պահել նրան: Հետո բժիշկներն հաղորդեցին, որ տղան արդեն սկսել է մշտապես հաց և բուսական այլ ուտելիքներ ընդունել, jողա է գնում առանց հում մսի: Իբրև մեծ հաղթանակ, ասում էին, որ Պարասրամը, որ սկզբում այնպես վայրենի էր, սկսել է խաղալ իր եղբայրների և քույրերի, իսկ հետո նաև հարևան երեխաների հետ:



Պարզվում է, որ մանկան օրգանիզմի մեջ թաքնված են վիթխարի ուժեր:

—Դուրս է գալիս, որ մարդը կարող է հարմարվել ամենաանմարդկային պայմաններին և չկործանվել,— եզրակացրին իմ աշակերտներն իրենք: Բայց ահա հարց է ծագում՝ դրանից հետո նա մա՞րդ է մնում:

## ՈՎ Է ՄԵԶ ԴԱՍՏԻԱՐԱԿԵԼ

Շատ հազարամյակներ են անցել, մինչև մարդը գազանից դարձել է մարդ: Պասկալը մի անգամ ասել է, որ մարդը կենդանի էակ է, որն ունի ականջի բլթակ: Պասկալին առարկել են: Այն ժամանակ նա նոր բնորոշում է տվել. «Մարդը մի էակ է, ընդունակ ծիծաղելու»: Իրոք որ փիղը ժպտում է միայն անեկդոտների մեջ: Բայց կապիկի դեմքին Չարլզ Դարվինը նկատեց ժպիտ: Լյուդվիգ Ֆոյերբախը մարդուն կոչեց էակ, որն ընդունակ է սիրելու: Բայց մի՞թե շունը չի սիրում իր թուլաներին և արագիլները չեն կապվում մեկը մյուսի հետ ողջ կյանքում:

Աշխատելով, մարդն ազդում է բնության վրա, բնությունն էլ իր հերթին՝ նրա վրա: Մտածելու ընդունակությունը մարդուն բարձրացրեց գազաններից: Հանդես եկան հոգեկան պահանջներ, որոնք մարդու համար ոչ պակաս կարևոր են, քան հացն ու ջուրը: Մարդը դարձավ հասարակության մասնիկը:

Բայց երբ դժբախտություն է պատահում և երեխայի կապը մարդկանց հետ խզվում է, ապա երեխան նորից դառնում է գազան: Անմիջական հաղորդակցությունը կորչում է: Մարդ-գազանը հարմարվում է նոր կյանքին: «Գայլի երեխաների» օրինակները ցույց են տալիս հասարակության, դաստիարակության և կրթության անհրաժեշտ դերը մարդկային զարգացման գործում:

—Հապա հրաշալի Մաուգլիի մասին ի՞նչ կասեք,— կրկին վերադառնանք մենք մեր վիճաբանության սկզբում ծագած հարցերին:

Մաուգլին, հեքիաթի մեջ, գայլերից սովորում է այն, ինչ չեն կարող անել մարդիկ: Գազանները շփվելով նրա հետ, դառնում են ավելի հասկացող: Երբ խնամակալ մայր գայլը վերադառնում է գյուղ, նա ներկայանում է ավելի ազնվաբարո, քան մարդիկ, և նորից գնում է իր ընկեր գայլերի մոտ: Կիպլինգի



գրքում ներկայացված է սեր բնության և անտառի բնակիչների նկատմամբ: Հնարավոր է, որ նրա հիմքում ընկած է իրական փաստ: Եվ այնուամենայնիվ, Մաուգլին ավելի իրական չէ, քան կախարդ-պառավը կամ թե գորտ-արքայադուստրը:

Բայց ի՞նչ կլիներ, եթե երկրագնդի բնակիչները, դպրոցական հասակի երեխաներից մինչև ծերերը, մի անհավատալի առավոտ անհետանային: Մնային մինչդպրոցական հասակի երեխաները: Ի՞նչ կպատահեր նրանց: Առանց մեծերի, առանց դաստիարակության երեխաները կմնային նախնադարյան վիճակում, չէին տիրապետի կուլտուրայի: Մարդկությունը կսկսեր ապրել նախնադարյան կյանքով: Այսպիսի միտք է արտահայտել ֆրանսիական հոգեբան Անրի Պյերոնը:

## ՄԱՐԴՈՒ ԹԵԿՆԱԾՈՒ

Լև Նիկոլաևիչ Տոլստոյը նկատել է, որ ծնվելու օրվանից մինչև հինգ տարեկան դառնալը մարդը անցնում է ավելի հագեցած ճանապարհ, քան մնացած իր ողջ կյանքի ընթացքում:

Ծնվեց մարդը: Նա դեռևս մեծատառով գրվող մարդ չէ. ծնողները պետք է դարձնեն նրան այդպիսին: Մարդկանց ստեղծած աշխարհը աստիճանաբար բացվում է նրա առջև: Սկզբում դա վառվռուն խաղալիքներն են՝ գդալ, գավաթ, պատ: Նույնիսկ բնության երևույթները մարդու մեր թեկնածուն դիմավորում է արհեստական պայմաններում, ցրտից նրան պաշտպանում է հագուստը, երբ գիշեր է իջնում, սենյակում վառվում է էլեկտրական լամպը: Բայց եթե հանվի երեխան մարդկային աշխարհից, նա կդադարի ֆիզիկապես ու հոգեպես նորմալ մեծանալ: Այդ իսկ պատճառով մարդկանց առաջին խնդիրն է՝ երեխային սովորեցնել մարդկային սովորությունները, նրան մարդ դարձնել: Առանց մեծերի օգնության երեխան չի սովորի անգամ ոտի կանգնել ու քայլել:

Շատ կարևոր է մանավանդ մարդկային փորձը ժամանակին հաղորդելը: Երեք հարյուր հիսուն տարի առաջ հնդկական փադիշահ Աքբարը այսպիսի մի դաժան փորձ է կատարել: Մի քանի ամսական յոթ երեխայի փադիշահը փակել է տվել ամրոցում: Դարպասի վրա բացված փոքրիկ անցքով նրանց սնունդ են տվել: Մինչև յոթ տարեկան դառնալը երեխաները չեն լսել և ոչ մի բառ: Երբ նրանց բաց են թողել, պարզվել է, որ նրանք կարողանում են արձակել միայն անհոդաբաշխ հնչյուններ: Բայց դրանից հետո էլ, շփվելով մարդկանց հետ, նրանք ձեռք չեն բերել կորցրածը, մնացել են տհաս: Ուշացումը եղել է ճակատագրական:

Ահա և պատահական այս փաստերը բերում են կարևոր եզրահանգման: Մանկությունը մարդու կյանքի մեկ հինգերորդ մասն է կազմում, կենդանու՝ մեկ քսաներորդը և ավելի պակաս: Եվ այն, ինչ մարդը սովորում է մանկության ժամանակ, հիշողության մեջ մնում է ընդմիշտ: Մանկության ժամանակներից մնացած սովորությունները ուղեկցում են նրան ամբողջ կյանքում, քանի որ մարդը մանրուքներից, սովորություններից է գոյանում: Ահա թե ինչու այնքան կարևոր է, որ դու քո մեջ ժամանակին նկատես վատ սովորությունը, որպեսզի այն չամրանա, որպեսզի կարողանաս հաղթահարել:

## ԿԾԵԼՆ ԱՐԳԵԼՎՈՒՄ Է

—Վերջերս,— լրջորեն ասացի ես երեխաներին,— ես սեփական աչքով տեսա մի բարձր կուլտուրայով ութերորդ դասարանցու, որը (չեք հավատա), միս էր ուտում, ոչ թե մատներով, այլ դանակ-պատառաքաղով:

Դասարանում քրքիջ բարձրացավ:

—Շատ արարքներ, մեկ՝ հիմնականում կուլտուրական մարդկանց համար անիմաստ է,— շարունակեցի ես,— օրինակ՝ երբ գնում ես տրամվայով և հարկավոր է շարժվել առաջ, չի կարելի առջևում կանգնած ուղևորին կծել, իսկ գոռալ կարելի՞ է: Գոռալ թե քրթմնջալ—էապես նույնն է: «Դուք, ի՞նչ է, չե՞ք տեսնում, այդտեղ դուռը փակ է»,— ասաց ինձ մի աղջիկ, երբ ես անծանոթ դպրոցի մուտքն էի փնտրում: Աղջիկը թեև չէր ուզում, բայց կծեց ինձ և սաստիկ ցավ պատճառեց:

Մեզանից ոչ ոք որևէ տան հյուր լինելիս, սրաննրան հրելով, չի հարձակվում սեղանի վրա, չի հափշտակում կարկանդակի ամենամեծ կտորը: Իսկ կչտանալուն պես անմիջապես տուն չի գնում:

—Իսկ վեցերորդ դասարանցին, երբ բուֆետում արմունկներով հրում է փոքրիկներին, որպեսզի բուլկի գնի,— հարցրի ես,— մի՞թե նման չէ այն հյուրին, որն առաջ վազելով, կարկանդակ է հափշտակում սեղանից:

Յուրաքանչյուր դեպք առանձին վերցրած մանրուք է և կարելի է չհիշել: Գուցե այն աղջիկը ուզում էր ինձ օգնել և պարզապես չգիտեր, թե ինչ ձևով այդ անի:



Երբեմն թվում է, թե մանր բան է անծանոթին քաղաքավարի պատասխանել, այսինքն մարդավարի վարվելը: Ոչ... Մարդկային հաղորդակցության օրենքներն ու ձևերը, այլ կերպ ասած՝ վարքի կանոն-



# ԻՍԿ ԹՌՉՈՒՆՆԵ՞ՐԸ

ԱՐՏԱԿ ՈՍԿԱՆՅԱՆ

Նկ. ՎԱՆԻԿ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Հին եգիպտական տաճարների պատերին պահպանվող բազմաթիվ և բազմազան պատկերներից են նաև նեղոսյան լոքոնները: Ուրեմն եգիպտացիները գերբնական ուժ են վերագրել նաև այդ ձկնատեսակին: Եվ դա բնական է, քանի որ նեղոսյան լոքոն օժտված է էլեկտրական հատկություններով: Էլեկտրական երևույթներին անտեղյակ եգիպտացին զգալով աներևույթ ուժերի ազդեցությունը, ոչ միայն փորձ չի արել մոտենալ այդ ձկանը, այլ նույնիսկ աստվածացրել է: Դա էլ հենց պատճառ է դարձել, որ նեղոսյան լոքոն ստացել է «սուրբ ձուկ» անունը:

Էլեկտրական հատկություններով օժտված ձկնատեսակներ են հայտնի եղել նաև անտիկ հույները կամ քաղաքավարության էտիկետը, մշակվել է դարերով:

Հոգեբանները մի այսպիսի տերմին են հորինել՝ «դիրքորոշում» (տեղակայում): Մեր դաստիարակության, կուլտուրայի, սովորությունների համեմատ մեր մեջ մշակվում են վարքի որոշակի օրենքներ, յուրաքանչյուր կոնկրետ դեպքերում մենք վարվում ենք ըստ մշակված դիրքորոշման: Դրա համար էլ ասվում է. դաստիարակված մարդը նա է, ով գիտի, թե «ինչը չի կարելի»: Բայց և, իհարկե, նա գիտի նաև, թե ինչը և ինչպես կարելի է:

Նրանով, թե ինչպես է վարվում տղան կամ աղջիկը մեկ հետ կամ հասակակիցների հետ, արտաքին մանրուքներով են շրջապատողները դատում՝ բարի՞ են նրանք, համե՞ստ են, նույնիսկ խելքն են որոշում: Գաղափար են կազմում նաև նրանց ընտանիքի և դպրոցի, ծնողների մասին, թեև նրանք ներկա չեն: Եվ հաճախ կարելի է տալ ծնողների միանգամայն ճշգրիտ դիմանկարը, միայն տասը րոպե նրանց երեխաների հետ խոսելով:

Աշխարհի ծայրին գտնվող փոքրիկ նեղուցում մեր մեծ նավի կապիտանը հրաման է արձակում կանգնեցնել նավը և սպասել մինչև կողքով անցնի օտարերկրյա փոքրիկ նավակը: Ի՞նչ է մտածում այդ նավակի մարդը: Հավանաբար մտածում է, որ այն երկրում, որտեղից եկել է նավը, ապրում են քաղաքավարի մարդիկ: Իսկ ես մտածում եմ, որ կապիտանը, երբ փոքրիկ տղա է եղել, դռնից ներս մտնելիս ճանապարհ է տվել աղջկան կամ օգնել մորը, նրա ձեռքից առնելով ծանր պայուսակը: Առանց փոխադարձ հարգանքի անկարելի է աշխատել, սովորել, ապրել հասարակության մեջ:

Եթե արհամարհես թեկուզ մի կարգ, այսօր դա վատ կլինի ուրիշի համար, վաղը՝ քեզ համար: Վարվեցեք ուրիշի հետ այնպես, ինչպես կուզենայիք, որ վարվեն ձեզ հետ, սովորեցնում է վաղեմի իմաստությունը:

## ՄՈՒ՞ԹԸ, ԹԵ՞ ԴԵՄՔ

Անքաղաքավարի մարդիկ վիրավորում են ամենից առաջ իրենք իրենց, որովհետև երբ մարդն ուրիշին չի հարգում, նշանակում է, իրեն նույնպես չի հարգում: Եվ երբ աշակերտն ասում է. «Ես նրա մութին հասցրի», նա նույնը կարող է ասել և իր մասին. «Նա իմ մութին հասցրեց»: Նույնիսկ չի մտածի, որ իր սեփական երեսն էլ կոչեց մութ:

Կարելի՞ է դպրոցում անցնել քաղաքավարագիտություն առարկա:

Կան օրենքներ, որոնք կարելի է սովորել և ապա կիրառել, առանց առանձնապես մտածելու, ինչպես «երկու անգամ երկու հավասար է չորսի», կամ «Վոլգան թափվում է Կասպից ծովը»: Ո՛չ, քաղաքավարությունը, դաստիարակվածությունը օրենքների գումար չէ, թեև օրենքները պետք է իմանալ: Մարդկային հաղորդակցության գիտությունը մենք անցնում ենք մանկապարտեզում և դպրոցում՝ բոլոր ժամերին, անցնում ենք ամբողջ կյանքի ընթացքում, որտեղ էլ որ մենք գտնվենք՝ տանը, ավտոբուսում, լողափին, խանութում, բակում, կինոյում, անտառում, միայնակ, ձեզ հետ և առանց ձեզ, ընկերների հետ, հարազատների, մեծերի, փոքրերի և միանգամայն անծանոթ մարդկանց հետ: Ինչպե՞ս վարվել այս կամ այն դեպքում: Յուրաքանչյուր անգամ հարկավոր է մտածել: Այնպես որ եկեք, օր առ օր, հիմա և միշտ, դաստիարակենք մեր մեջ տակտ, ուշադրություն շրջապատի նկատմամբ՝ նույնիսկ մանրուքների մեջ: Եվ երբեք չմոռանանք, թե ինչը չի կարելի, որովհետև մենք՝ մարդիկ ենք:

րին: Միջերկրականում բնակվող կատվաձկան մասին Արիստոտելի թողած գրավոր վկայությունը դրա ապացույցն է: Ըստ այդ վկայության կատվաձուկը նախ անզգայացնում է իր որսին, ապա նոր բռնում: Արիստոտելի կարծիքով «հարվածի ուժը բնակվել է ձկան մարմնում»: Իհարկե, Արիստոտելին դեռ անհայտ էր էլեկտրական դաշտի գոյությունը, հետևաբար նաև՝ հեռավորության վրա նրա ազդելու ընդունակությունը:

Այդ հարվածի ուժի բնույթը անհայտ մնաց մինչև համարյա 19-րդ դարը, մինչև իտալացի մեծ գիտնական Ալեսանդրո Վոլտայի մարտկոցի գյուտը: Վոլտան կատվաձկան հարվածի ուժը նույնացրեց մարտկոցի ստեղծած էլեկտրական դաշտում գործող ուժի հետ և նրան վերագրեց էլեկտրական բնույթ:

Էլեկտրակիր ձկների թիվը Նեղոսյան լոքոյով և Միջերկրականի կատվաձկով չի սահմանափակվում. Ներկայումս հետազոտողներին հայտնի է շուրջ 300 նման ձկնատեսակ: Օրինակ, նրանցից մեկը, որ բնակվում է Ամազոնում և հարավամերիկյան մի շարք այլ գետերում, կարող է զարգացնել մոտ 500 վոլտ պոտենցյալների տարբերություն: Եթե հիշենք, որ քաղաքային ցանցի լարումը կազմում է ընդամենը 127 վոլտ, ապա պարզ կդառնա, թե որքան վտանգավոր է մարդու կյանքի համար նման ձկնատեսակի որսով զբաղվելը:

Տարիներ շարունակ Ամազոնի ավազանում հետազոտություններ կատարող Ա. Հումբոլտը պատմում է, թե ինչպես էին հնդկացիները որսում այդ ձուկը: Նրանք նախ ձի էին մտցնում ձկների «բնակատեղին» և նոր միայն որսում ձկները: Բանն այն է, որ պարպվում էր էլեկտրակիր ձկների լիցքերի մեծ մասը, և նրանք դառնում էին մարդու համար անվնաս: Իհարկե, հնդկացիները չգիտեին, որ ձկները տվյալ դեպքում յուրահատուկ կուտակիչներ են: Բայց գիտեին, որ որսն ուշացնելու դեպքում նրանք նորից դառնում են վտանգավոր: Այդ էր պատճառը, որ ավազանը ձի մտցնելուց անմիջապես հետո հնդկացիները ժամանակ չէին կորցնում կամ, ավելի ճիշտ, հնարավորություն չէին տալիս կրկին վերալիցքավորվելու ձկանը:

Իսկ այնուամենայնիվ ի՞նչ են իրենցից ներկայացնում ձկների էլեկտրական օրգանները: Առաջին հերթին դրանք հատուկ մկանային «վանդակներ» են, այսպես կոչված, էլեկտրական «թիթեղներ»: Հետաքրքիրն այն է, որ այդ «թիթեղները» իրար են միացված ճիշտ այնպես, ինչպես էլեկտրական մարտկոց կազմող էլեմենտները: Այդ օրգաններն զբաղեցնում են էլեկտրական կատվաձկան մարմնի գրեթե քառորդ մասը, իսկ լոքոյի մարմնի մեծ մասը, ինչ վերաբերում է օձաձկանը, ապա այդ օրգանները կազմում են նրա գրեթե ողջ մարմինը, բացառությամբ գլխի:

Ինչպես հայտնի է ֆիզիկայից, անշարժ վիճակում գտնվող լիցքի շուրջը առաջանում է միայն էլեկտրական դաշտ, իսկ շարժվող լիցքի շուրջը՝ թե՛ էլեկտրական, թե՛ մագնիսական: Ուրեմն, լիցքակիր ձկները շարժվելիս իրենց շուրջն առաջացնում են ոչ միայն էլեկտրական, այլև մագնիսական դաշտ:

Շռայլ է եղել բնությունը մի շարք ձկնատեսակների նկատմամբ. նրանց ոչ միայն օժտել է էլեկտրական և մագնիսական հատկություններով, այլև տվել է էլեկտրամագնիսական դաշտն զգալու ընդունակություն:

Իսկ թռչուննե՞րը: Մի՞թե էլեկտրամագնիսական հատկություններով չեն օժտված նաև թռչունները: Նրանց թռիչքի և խոյանքի մեջ մի՞թե իր բաժինը չունի նաև Երկրի մագնիսականությունը:

Իհարկե, այս հարցերին դեռևս սպառիչ պատասխան չի տրված: Փորձեր, անշուշտ, արվել են և արվում են: Օրինակ, աղավնիների կողմնորոշման ընդունակությունը ստուգելու համար, նրանց թևերին ամրացվել են բավական ուժեղ մագնիսներ, որոնք փորձարարների կարծիքով պետք է խանգարեին Երկրի մագնիսական դաշտի և աղավնու «փոխհարաբերությանը»: Սակայն արդյունքը եղավ այն, որ աղավնիները առանց դժվարության վերադարձան իրենց բույնը: Ուրեմն Երկրի մագնիսականությունը չէ, որ առաջնորդում է աղավնիների թռիչքը:

Ընդհանրապես էլեկտրամագնիսական ալիքների գոյության զգացում չի տրված կենդանիներից ամենակատարյալին՝ մարդուն (այդ ալիքների առկայությունը մարդը կարող է հայտնաբերել իր իսկ ձեռքերով պատրաստված զգայուն գործիքներով): Երևի բնությունը ճիշտ է վարվել. թե չէ ի՞նչ կլիներ ժամանակակից մարդու վիճակը, եթե նա զգար բազմահազար արհեստական և բնական աղբյուրներից առաքվող էլեկտրամագնիսական ալիքների գոյությունը:

Մագնիսական և էլեկտրական դաշտերի գոյությունը զգալ կարողանում են ոչ միայն կենդանիները, այլ նաև միջատները, իհարկե, յուրաքանչյուրին հատուկ է համապատասխան հաճախականության որոշակի գրգիռ:

Էլեկտրական և մագնիսական դաշտերի գոյությունը զգում են նաև բույսերը: Այդ դաշտերի ազդեցությունը բույսերի և կենդանիների վրա մինչև այսօր էլ ուսումնասիրության առարկա են գիտնականների համար: Իր գոյության ընթացքում գրեթե ամեն քայլափոխի մարդը ուղղակի կամ անուղղակի առնչվել կամ ականատես է եղել բնության այդ հրաշքներով ուղեկցվող երևույթներին: Իսկ թե որն է այդ երևույթների էությունը, ինչպես են ծագում և ընթանում դրանք, կպատմվի հաջորդ հոդվածներում:



# ՀԱՎԵՐԺԱԿԱՆ ԿՐԱԿ

*ԱԼԵՔՍԱՆԴՐ ՔՅՈՒՐՔՉՅԱՆ*

*ՆԿ. ՄԱՐՋԻԵՏ ՄԱՐԳԱՐՅԱՆԻ*

Հունական Օլիմպոս լեռան վրա ապրում էին հզոր և հպարտ աստվածները, որոնց իշխում էր Զևս-շանթարձակը: Ահեղ էր Զևսը և երկնքում ու երկրի վրա ոչ ոք չէր հանդգնում հակառակել նրան: Զևսի դեմ համարձակվում է ըմբոստանալ բարի ու արդար տիտան Պրոմեթևսը: Նա Օլիմպոսից փախցնում է կրակը և վերադարձնում մարդկանց: Զևսի հրամանով Պրոմեթևսին շղթայակապ գամում են Կովկասյան մի ժայռի և պատժում, որ արծիվը կտցահարի նրա լյարդը: Այսպիսին էր աստվածային պատիժը:

Սա լեգենդ է: Իսկ ո՞րն է կրակի առաջացման իրական պատմությունը: Գազանները վախենում են կրակից: Կապիկն է միայն, որ երբեմն համարձակվում է տաքանալու համար մոտենալ կրակին, բայց նա ինքը չի կարողանում կրակ վառել կամ վառածը պահպանել: Միայն մարդուն է տրված այդ շնորհը: Հնարավոր չէ իմանալ, թե մարդը երբ է առաջին անգամ ծանոթացել կրակին: Ասում են՝ անհիշելի ժամանակներից: Իսկ այդ «անհիշելին» նշանակում է ոչ թե 1—2 հազար, այլ 100 հազարավոր տարիներ առաջ: Մենք կարող ենք միայն այս կամ այն չափով կռահել, թե մարդը ինչպես է բացահայտել կրակի հատկությունները: Միգուցե կայծա՞կն է որևէ տեղ խփել ու այրել ընկած չոր ծառը և այդ կրակից մի համարձակ որսորդ տարել է քարանձավ: Գուցե կրակին առաջին անգամ մոտեցել են հրաբխի ժայթքմա՞ն ժամանակ: Սկզբնական շրջանում մարդիկ նույնպես կրակից վախեցել են ու հեռու փախել: Հազարամյակներ են անցել, մինչև մարդը գլխի է ընկել, որ կրակը օգտակար է և սովորել է այն վառ պահել: Դրանից հետո էլ հազարամյակներ են անցել, մինչև մարդը սովորել է կրակ վառել, կայծը օգտագործել... Ճյուղից-ճյուղ ցատկելով ու ճոճվելով ճյուղերի վրա, նա հավանաբար հանկարծ զգացել է, և դա մի պատմական պահ է եղել, որ ձեռքերը մի տեսակ այրվում են... Մարդը ձեռքերի ափերը իրար շփելիս նույնպես ջերմություն է զգացել: Այնուհետև նա սկսել է փայտը շփել փայտին և ի վերջո, ինչպես, հաջողվել է կրակ ստանալ:

Հին հռոմեացիները բավականին կատարելագործեցին կրակ ստանալու եղանակը: Նրանք կրակը ստանում էին ոսպնյակի միջոցով: Հետո սկսեցին պողպատով կայծ ստանալ կայծքարից: Շա՜տ, շա՜տ ժամանակ անցավ լուցկուն ու վառոդին հասնելու համար: Հին հռոմեացիները թեև կարողանում էին օգտվել ոսպնյակից, սակայն կրակ ստանալու այդ միջոցը հաճախ նրանց հանում էր համբերությունից, և նրանք սկսեցին հոգ տանել, որ կրակը վառ պահել կարողանան: Այդ նպատակով պահում էին աղջիկների հատուկ խումբ, որոնց անվանում էին Վեստայի քրմուհիներ կամ վեստալուհիներ: Նրանց պարտականությունն էր՝ գիշեր ու ցերեկ վառ պահել տաճարի կրակը: Մշտավառության պատճառով՝ այն անվանում էին «Հավերժական կրակ»: Բոլորը հարգանքով էին վերաբերվում վեստալուհիներին և հանդիպելիս ճանապարհը զիջում նրանց: Բայց եթե նրանցից մեկնումեկը որևէ պատճառով թերանում էր պարտականության մեջ՝ նրա կյանքին վերջ էին տալիս, քանի որ մարդիկ կարծում էին, թե նման մեղքի համար՝ աստվածներն իսկույն իրենց դաժան պատիժ կուղարկեն:






Ուղղաթիռների և ինքնաթիռների կոնստրուկտորների առջև ծառացած խնդիրները նույնն են. ստեղծել բազմապիսի թռչող սարքավորումներ, տարբեր նպատակների և տարբեր արագության համար:

Օրինակ՝ թռչող բազկաթոռ: Ո՞ւմ են դրանք հարկավոր: Բարձր լարման էլեկտրահաղորդման գծեր մոնտաժողներին կամ անտառային ժամապահներին, որոնք պահպանում են անտառային փիթխարի գանգվածները, բայց գուցե նաև հովիվներին, որոնք բազմահազար ոչխարների հոտ են արածեցնում: Ահա այդպիսի փոքրիկ ուղղաթիռի մասին է պատմվում ստորև:

## ԹՌՉՈՂ ԲԱԶԿԱԹՈՌ

Նայելով նկարին, դժվար է հավատալ, որ մի մարդը մի քանի րոպեում կարող է հավաքել այս անսովոր թռչող բազկաթոռը: Դրա համար նույնիսկ գործիքներ չեն պահանջվում: Բոլոր մասերը, իսկ դրանք ութսունն են, տեղավորվում են ոչ մեծ ճամպրուկում:

Սկզբում հավաքում են խողովակատիպ ոտքերը՝ ստորին մասերով, նստելատեղը՝ արմունկահենակներով, ապա ավելացնում են բարձր ու ցանցկեն թիկնակը, ապա մի քանի մասեր ևս, ու դետնին արդեն կանգնած է թռիչքի պատրաստ... փոքրիկ ուղղաթիռը:



Օդաչուն խորը նստում է բազկաթոռի մեջ, կապիչներով կապոտվում, աջ ձեռքն առնում բռնակը, և սկսում են արագ-արագ պտտվել նրա գլխավերևի թիակերպ պտուտակները: Եվ ուղղաթիռը վերջապես պոկվում է գետնից:

Անսովոր ու տարօրինակ տեսք ունի այս թռչող սարքը: Նա չունի շարժիչներ, ո՛չ հիդրավլիկ, ո՛չ սառեցնող սիստեմ, ո՛չ տրանսմիսիա (փոխհաղոր-

## ԹՎԱՆՇԱՆՆԵՐԻ

*Աշխարհի բոլոր երկրների դպրոցներում ստուգվում և գնահատվում են աշակերտի գիտելիքները: Եթե մեր երկրում, Հունգարիայում և Հարավսլավիայում հինգը ամենաբարձր թըվանշանն է, իսկ մեկը՝ ամենավատը, ապա Գերմանիայում ու Չեխոսլովակիայում հակառակն է. մեկը ամենաբարձր թվանշանն է: Հոլանդիայում և Ռումինիայում դպրոցականները ստանում են մեկից մինչև տասը թվանշան, ըստ որում հինգը միջակն է, իսկ տասը՝ գերազանցը: Աֆղանստանում միջակ է 3,5-ը: Ֆրանսիայում նախակրթական դասարաններում աշակերտները նույնպես մեկից մինչև տասը թվանշաններ են ստանում, իսկ բարձր դասարաններում գնահատականների չափանիշը հասնում է մինչև քըսանի: Ճապոնիայում գնահատման յուրահատուկ ձև կա, որը լրիվ տարբերվում է մյուս երկրներից: Այստեղ փաստորեն «թվանշաններ» գոյություն չունեն: Աշակերտին գնահատելու համար ուսուցիչը նրան ենթարկում է տարբեր փորձերի, որոնք գնահատվում են տասից մինչև հարյուր: Հետագայում այդ օգնում է որոշելու աշակերտի աշխատասիրության չափը: Կուբայում և Չիլիում վերացվել են թըվանշանները. աշակերտների գիտելիքները գնահատվում է հատուկ նշումներով: Ամերիկայի Միացյալ Նահանգներում գոյություն ունի գնահատման ուրիշ մեթոդ: Լավ գնահատականներ են A-ն և B-ն, իսկ վատ՝ C, D: Ամերիկյան բազմաթիվ դպրոցներում աշակերտները բաժանված են ըստ ընդունակություննե-*

դակ), մի խոսքով, այն ամենը, առանց որի չկա թռչող սարք:

Սակայն այս ուղղաթիռը կարողանում է բարձր արագություն վերցնել և օդում լավ մանևրել:

Ինչպե՞ս են պտտվում թիակները: Գաղտնիքը գուցե անսովոր շարժիչի մեջ է: Ի՞նչ գաղտնիք: Մի՞թե կարելի է շարժիչ կոչել ծխախոտատուփից փոքր-ինչ մեծ մետաղյա մի քանի մասերը: Այո՛, կարելի է: Կարելի է, որովհետև յուրաքանչյուր տուփի մեջ տեղի է ունենում բանող նյութի ընդլայնում: Միայն թե մխոցի դերը այստեղ կատալիզատորն է կատարում, որի օգնությամբ արմունկաճենակ-բաքերից դուրս է մղվում հեղուկ ջրածնի գերօքսիդը:

Ջրածնի գերխիտ օքսիդը վաղուց է օգտագործվում իբրև բանող նյութ: Առավելապես ռեակտիվ տեխնիկայի ասպարեզում:

Թռչող բազկաթոռի փորձարկումները, որ կատարվել են անցյալ տարվա վերջերին ամերիկյան Օդեսա քաղաքում, անցավ հաջող: Դրանք ցույց տվեցին, թե որքան ռեալ է դառնում թռչող սարքերի օգտագործումը իբրև անհատական ուղևորության միջոց: Այժմ արդեն նման ուղղաթիռների պատրաստումը թանկ չի նստում փոքրալիտրաժ ավտոմեքենաներից: Եվ միայն բանող նյութի՝ ջրածնային գերօքսիդի թանկությունն է այժմ խանգարում դրանց մասսայական արտադրությանը:

*Թարգմ. Ս. ՍԱՀԱԿՅԱՆԻ*

## ԴԱՍԱՐԱՆԱԿԱՆ ԳՐԱՏԱԽՏԱԿԸ ՀՆԱՑԵԼ Է




Այսպես են կարծում մի շարք երկրների՝ ԳԴՀ, ԳՖՀ, Անգլիայի, ԱՄՆ-ի դպրոցական ուսուցման մասնագետները: Այդ երկրներում ուսուցչին օգնող ձեռնարկներ են տպագրվում թաղանթե թափանցիկ ժապավենի (պլյոնկա) վրա: «Կենդանաբանության», «Բուսաբանության», «Երկրաչափության» դասագրքերը բաղկացած են ոչ թե մի քանի պրակ թղթից, այլ նման ժապավեններից: Գրքի էջը կոդոսկոպի միջոցով ցուցադրվում է պատի մեծ էկրանի վրա: Բոլոր բացատրությունները ուսուցիչը կարող է տալ կոդոսկոպի մոտ կանգնած, ցույց տալով հարկավոր նշաններն ու թվերը հենց ժապավենի վրա: Ավելին, արագ չորացող և հեշտ ջնջվող պաստայով մատիտը հնարավորություն է տալիս գրել հենց ժապավենի վրա, ընդ որում ժապավենին գրածը խկույն էլ ցուցադրվում է էկրանի վրա: Այդ ձևը շատ հարմար է, միևնույն էկրանի վրա կարելի է ցույց տալ լուսանկար, գծագիր, տեքստ, ինչպես և գրել ու լուծել խնդիրներ:

## Մ Ա Ս Ի Ն

*ռի: A խմբում շնորհալի աշակերտներն են, B խումբը՝ միջակներինը, C խումբը ծույլերինը: Դպրոց ընդունվելուց հետո աշակերտները ենթարկվում են հատուկ քննության, ըստ որի որոշվում է նրանց «մտավոր» աստիճանը: Շնորհալիները կազմելու են ապագա հասարակության վերնախավը, միջակները ապահովելու են վաղվա աշխատանքը: Երբեմն այս քննության արդյունքը կախում ունի ծնողների քսակից:*

*Թարգմ. Տ. ԴԱՐԲԻՆՅԱՆԻ*




## ԾԻԱԾԱՆ

*ՀՌԱՄ ՀՈՎՍԵՓՅԱՆ*

Սարին կախվեց ամպը թուխ,
Անձրև իջավ խշշալով,
Շանթը ջարդեց ծառ ու ճյուղ,
Գետը սողաց փշշալով:
Երկինքն ասես փուլ եկավ,
Տխրել էին հանդ ու հող,
Սակայն հանկարծ դուրս եկավ
Մի ծիածան ոսկեշող...
Ժպտաց խաղաղ մեր աչքին,
Բաշը ցնցեց գետն հորդուն,
Ինչ լա՜վ է, որ կայծակին
Ծիածանն է հաջորդում...




## ԱՎԳՅԱՆ ԱԽՈՌՆԵՐ

Ըստ հին հունական լեգենդի, Էլիսում[1] ապրում էր ձիերի կրքոտ սիրահար Ավգիաս արքան: Երեք հազար ձի էր վրնջում նրա գոմերում: Սակայն այն ախոռները, ուր պահվում էին ձիերը, երեսուն տարվա ընթացքում ոչ ոք չէր մաքրել և դրանք մինչև տանիքը թաղվել էին գոմաղբի մեջ:

Բարեբախտաբար Ավգիաս արքայի մոտ ծառայության է մտնում առասպելական ուժի տեր Հերակլեսը (հռոմեացիները նրան Հերկուլես են կոչում): Արքան նրան հանձնարարում է մաքրել ախոռները, մի բան, որ չէր պատի ոչ մեկի ուժը:

Հերակլեսը որքան հզոր, նույնքան էլ խորամիտ

## ԵՎ, ԱՅՆՈՒԱՄԵՆԱՅՆԻՎ, ՆԱ ՊՏՏՎՈՒՄ Է

Կաթոլիկ եկեղեցին իտալացի մեծ ֆիզիկոս և աստղագետ Գալիլեյին (1564—1642) հարկադրում է հրաժարվել Կոպեռնիկոսի այն ուսմունքից, ըստ որի երկրագունդը շարժվում է, պտտվում է Արևի շուրջը և ոչ թե Արևը՝ Երկրի: Մահվան վտանգի տակ յոթանասունամյա իմաստունը տեղի է տալիս: Բայց ժողովուրդը չի հավատում կատարվածին: Պահպանվել է մի ավանդություն, համաձայն որի, դատապարտված ծեր գիտնականը իբր ոտքը կայրացած խփել է գետնին և բացականչել. «Եվ, այնուամենայնիվ, նա պտըտվում է»: Այդ դարձվածքը ապրել է դարեր և նշանակում է. «Ինչ ուզում եք ասեք, ես համոզված եմ իմ ճշմարտության մեջ»:



## ԲԱՅՑ ԹԱԳԱՎՈՐԸ ՄԵՐԿ Է

Երկու խաբեբա, որ ձևանում են ջուլհակներ, մի թագավորի խոստանում են գործել այնպիսի մի կտոր, որը կարող է տեսնել իր պաշտոնին արժանի խելացի մարդը միայն: Ձևանալով, թե ջանասիրաբար աշխատել են, խաբեբաները գործվածքի փոխարեն պատվիրատուին են հանձնում «ոչինչ», անշոշափելի դատարկություն:

Սակայն թագավորը և նրա մերձավորները ձևանում են, թե տեսնում են հիասքանչ գործվածքը, որպեսզի հանկարծ չկարծեն, թե իրենք հիմար են և գլուխ չեն հանում իրենց պաշտոնից: Թագավորը պչրում է մերկ, իսկ շրջապատողները հիանում են նրա զգեստով: Վերջապես մի մանչուկ, որ չգիտեր, թե բանն ինչումն է, տեսնում է թագավորին, ծիծաղում է ու բացականչում. «Բայց թագավորը մե՜րկ է»:

«Թագավորի նոր զգեստը» — այսպիսի մի հեքիաթ է գրել դանիացի հռչակավոր հեքիաթագիր Անդերսենը ավելի քան հարյուր երեսուն տարի առաջ: «Մերկ թագավոր» արտահայտությունը այդտեղից է առնված և գործ է ածվում բոլոր այն դեպքերում, երբ վախի կամ շահի թելադրանքով, խելացի մարդու տեղ են դնում վտանգավոր հիմարին:

*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*

[1] *Մարզ՝ Պելոպոնեսի հյուսիս-արևմուտքում:*



էր: Նա ախոռների դարպասների կողմն է շրջում Ալփեոս գետի հունը և ջրի բուռն հոսանքը սրբում տանում է ողջ կեղտը:

Հույներն այդ արարքը համարեցին նրա սխրանքներից մեկը և դասեցին Հերակլեսի սխրանքների շարքը՝ իբրև վեցերորդ սխրանք, իսկ «ավգյան ախոռներ» արտահայտությունը մինչև օրս գործ է ածվում աչքաթող արած, կեղտի մեջ կորած և առհասարակ կարգ ու կանոնից դուրս ամեն ինչի նկատմամբ:



## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԽԱՉԲԱՌ




*Գծիկներ ունեցող շրջանակներից սկսելով, ժամացույցի սլաքի շարժման ուղղությամբ, ամեն մի թվանշանի շուրջը գրե՛ք հինգ տառից բաղկացած բառեր:*

*1. Լեռնաշխարհ՝ Միջին Ասիայում: 2. Կղզի՝ Իտալիայում: 3. Քաղաք՝ Սև ծովի ափին: 4. Կղզի՝ Մալայան արշիպելագում: 5. Արևադարձային պտուղ: 6. Քաղաք՝ Թուրքիայում: 7. Դանուբ գետի վտակներից: 8. Հանրապետություն՝ ՍՍՀՄ-ում: 9. Բարձրավանդակ և ինքնավար մարզ՝ Չինաստանում: 10. Պետության մայրաքաղաք՝ Բալկանյան թերակղզում: 11. Գետ՝ Հայաստանում: 12. Պետության մայրաքաղաք՝ Եվրոպայում:*

*Կազմող՝ ԱԼԲԵՐՏ ՄԿՐՏՉՅԱՆ*

Լույս է տեսնում 1928 թվականից

№ 4 ապրիլ 1975 թ.



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ նկ. ՎԱՂԻՆԱԿ ՄԱՆԴԱԿՈՒՆՈՒ*

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍԱՐԳՍՅԱՆ Լ. (պատասխանատու քարտուղար), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—37—90

ՎՖ 05242: Պատվեր 507: Տպաքանակ՝ 81850: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 20/III 1975 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ 10 Կ.

ԻՆԴԵՔՍ 7780



*ՄԱՐԳԱՐՅԱՆ ԹԱՄԱՐԱ, 11 տ.*
*Թումանյանի շրջան, գյուղ Շնող*



*ՄԱԼԵՐՅԱՆ ԱՐՄԵՆ, 9*
*Երևան*

*ՄԱԹԵՎՈՍՅԱՆ ԱՐԱՅԻԿ, 10*
*Երևան*